**20Ձ**

Հեռստեցիր հանց ավազակ,
Երբ որ տնից չվեցին:

Թոռ ու ծոռի տեր ես հիմա,
Փափկացել է սիրտդ բիրտ,
Նրանք խելոք և գործունյա,
Ժառանգներ են քեզ պես կիրթ:

Թոռ ու ծոռդ կարիք չունեն,
Միշտ հպարտ են պապիկով,
Բայց ես գիտեմ, նրանք կուզեն,
Որ չխաբես կապիկով:

Փառքի գերի հավերժ եղար,
Միշտ ձգտեցիր գանձ ու գահ,
Առաջ անցան քանի՜ տխմար,
Դու չդարձար նախագահ:

Բրիգադի ղեկը տվին,
Գործի անցար թև առած,
Արարեցիր ամբողջ տարին
Տեղամասում քեզ տրված:

Քանի՜ հոգու տանը թմրած
Դու բուժեցիր քո վարքով,
Ապա նրանք խելքի եկած
Կյանք վարեցին նոր բարքով:

Կոմունիզմի մատույցներում
Աշխատեցին թափ առած,
Եվ ստացան լուրջ հատուցում՝
Բերք ու բարիք ամբարած:

Քո ձգտումը վեհ է, բարի,
Լի է փառքի մոլուցքով,
Քանի սաղ ես, մի՛ դադարի
Ելնել աստղոտ բարձունքով:

Դեռ էվերեստ կբարձրանաս
Ձնագնդի խաղալու,
Աստղերի մեջ երկնահաս՝
Մարսուհիներ գերելու:

Սևունին էլ, նոքար դառած,
Փառքիդ երգն է երգելու,
Վառ կերպարդ արեգնացած
Սերունդներին տանելու:

Իմաստուններ բազմաբեղուն,
Հին դարերից առ այսօր,
Մի կողմ թողած հանգիստ ու քուն,
Փառքն են գովում քո հզոր:

Ճառագում ես հորիզոնում՝
Ստվեր նետած արևին,
Նրանք անվերջ քեզ են տենչում,
Կարոտ են քո բարևին:

Քո արձանը պիտի դրվի
Կովկաս լեռան կատարին,
Որ քո ջանը մոտիկ լինի
Ամբողջ տարին արևին:

Որ ճառագես արև դառած
Բոլոր մարդկանց սրտերին,
Իսկ քո սիրտը կրակ արած,
Միշտ ջերմացնես ցրտերին:

Արծիվները թևատարած
Կգան ուսիդ կնստեն,
Ոչխարները իրենց որսած
Աչքիդ առաջ կլափեն:

Դու քարակերտ բոյ–բուսաթով
Շուք ես տալու լեռներին,
Եվ վաստակած փառք ու պատվով
Զարդարելու դարերին:

Ինչ է պակաս Ալինից,
Որ ցցվել է ամենուր,
Բրոնզացած նայում վերից,
Ղարաբաղն է տենչում զուր:

Քո ուղին է հարթ ու պայծառ,
Ոգորումով ակնբախ,
Տիեզերքի դուռն անպատճառ
Բացելու ես դու անվախ:

Արժանի ես դու կրկնակի՝
Քո վաստակով համարձակ
Շարքում լինել գիտունների
Եվ ստանալ մրցանակ:

Քո ընթացքի ամեն պահին
Քամի լինի համընթաց,
Երբ բարձրանաս երկնի գահին,
Կանայք կգան գրկաբաց:

Սեր ու սիրով օրդ կանցնի
Երկնի անհուն կապույտում,
Կվրնջա թամբած քո ձին,
Որ սավառնես աստղերում:

Թեև տարիդ առաջ գնաց,
Նպատակներ ունես վառ,
Աչքդ, հաճախ, սիրուն կանանց,
Կուզես գրկել անպատճառ:

Ջի լավ գիտես բուրմունք տվող
Կյանքի ավիշ հուր կանանց,
Եվ գերվում ես դու անսքող
Հրապույրով միշտ նրանց:

Եվ գոչում ես դու բարձրաձայն՝
Միշտ առույգ ես և ջահել,
Ընկերներդ ծերուկ դարձան,
Դու պատրաստ ես դեռ սիրել:

Մի՛ շտապիր երբեք կյանքում
Անցնել գետեր ու ծովեր,
Շտապողն է հաճախ տնքում
Գործերի մեջ ուժից վեր:

Փառքը ինքը քո հետևից
Ջրնգալով դեռ կգա,
Դափնիների իր ճյուղերից
Մի ճոխ պսակ քեզ կտա:

Կբարձրանաս մտքով Պառնաս,
Ոչինչ չկա քեզ անհաս, –
Թե բանաստեղծ ցցուն դառնաս,
Գիրք կարդալով զորանաս:

Թև ու թիկունք լինել մեկին
Հոգուդ պարտքն է մշտական,
Անկեղծ կօգնի խեղճ տկարին
Քեզ պես մարդը պատվական:

Ո՛րը ասեմ, ո՛րը՝ թողնեմ,
Խղճի տիպար, իմ Խորեն,
Ամեն անգամ սրտանց կուզեմ
Թշնամիքդ թող կորեն:

Տորիչելյան դատարկություն
Ուղեղներում կա ոմանց,
Զգոն եղիր, մհա արթուն,
Որ չհանդիպես դու նրանց:

Արժանիքդ զետնով չտաս,
Ջի դու վեհ ես, իմաստուն,
Քո բարձունքը, լավ իմանաս,
Չի հանդուրժում խտրություն:

Դեռ լեգենդներ պիտի հյուսեն
Բերնեբերան քո մասին,
Սերունդներին անվերջ ասեն,
Որ արև ես ու լուսին:

Ներող եղիր, հերոս արի,
Գովքդ չարի ըստ հարգի,
Մոլորվեցի քո կերպարի
Շողերի մեջ երևի...

Հոմերոսը աշխարհ թող գա,
Թող գա նաև Ֆիրդուսին,
Աքիլլեսին քացին իր տա,
Բոնապարտին փառքը սին:

Քե՛զ կմհա փառքի դափնին,
Նրանց տրված շատ իզուր,
Գովքդ կանի քո Սևունին,
Երկնքի մեջ միշտ լազուր:

Հունվար, 2015 թ.

*Սիրավան ՍԵՎՈՒՆԻ*

## ՆԵՆԳ ՈՐՈՇՈՒՄ

Որոշում կա, որ սրտից է բխում,
Որոշում էլ կա՝ փախել ես ուզում,
Նոր տարում նման որոշում արին,
Իրար խառնեցին չարն ու բարին:
Այդ որոշումը հենց որ ընդունվեց,
Մեր մարդկանց սիրտը, հոգին պղտորվեց:

Ուզում են փողը գանձել գրպանի,
Ոչ թե ըստ տանը ապրող շնչերի,
Այլ անպետք ընկած բազում մետրերի,
Որ տանտիրոջը նույնիսկ պետք էլ չի:
Քառմետրերի համար գումար են գանձում,
Մի՞ թե մետրերը թափոն են ծնում,
Ով հնարել է նմա՞ն որոշում,
Իր որոշումից մի՞ թե չի խմրշում,
Որքան էլ նրա ականջը կանչի,
Որոշումը այս խելքի մոտիկ չի:

Պետք է ուշ դարձնել մարդկանց զանգատին,
Նենգ որոշումը սեղմել իր ճակտին:
Որոշում է այս, անշուշտ, արտառոց,
Պետք է տիրոջ հետ նետել աղբանոց:

6 փետրվարի 2015 թ.

*Սիրավան ՍԵՎՈՒՆԻ*
*Լազարևսկ*

# ՀԱՅԵՐԵՆՈՎ ԳՐԵՐ ՄԱՇՏՈՑԻՑ 4 ԴԱՐ ԱՌԱՋ

Նախաքրիստոնեական շրջանում գոյություն ունեցած հայերեն գրի եւ գրականության մասին վկայություններ են պահպանվել անտիկ օտար հեղինակների երկերում: Հռչակավոր հույն փիլիսոփա եւ պատմագիր Մետրոդորոս Սկեփսիացին, ապրելով Պոնտոսում եւ Հայաստանում մինչեւ մ.թ.ա. 70 թ., գրել է Տիգրան II-ի պատմությունը եւ «Կենդանիների բանականությունը» փիլիսոփայական երկը: Այս վերջինը, ըստ Փիլոն Եբրայեցու (Ալեքսանդրացու) հաղորդման, որն ապրել է մ.թ.ա. I դ. վերջին քառորդից մինչեւ մ.թ. I դ. կեսը, թարգմանված է եղել հայերեն: Փիլոն Եբրայեցու նման քաջատեղյակ եւ բծախնդիր օտար հեղինակի այս համոզիչ հաղորդումը մեր թվարկության դարագլխին գոյություն ունեցած հայալեզու գրականության մասին, որ վկայակոչվում է առաջին անգամ, չի կարող չասասանել նույնիսկ ամենակարծր հակաթեզերը:

Հենց միայն Փիլոնի սույն վկայությունը բավական է ժխտելու այն տարածված կարծիքը, որ եթե նախամաշտոցյան շրջանում գոյություն է ունեցել գրավոր հայ գրականություն, ապա միայն հունարեն, ասորերեն կամ պարսկերեն լեզուներով, իսկ հայոց լեզվով եղել է միայն բանավոր գրականություն, այսինքն բանահյուսություն: Եվ անմիջապես հարց է ծագում՝ ի՞նչ գրով են գրված եղել երեք հայալեզու գրքերը, եթե ոչ հայերեն այբուբենով, որի մասին վկայում է III դարի ժամանակագիր եւ եկեղեցական մեկնիչ Հիպպողիտոսը: Հունարեն բնագրով իր «Ժամանակագրության» մեջ գրված Ալեքսանդր Սեւերոս կայսեր 13-րդ տարում՝ մ.թ. 234 – 235 թթ., Հաբեթի ցեղի 47 ազգերի շարքում որպես գրագետ (գիր ունեցող), Հիպպողիտոսը հիշատակում է հետեւյալ յոթին իբերներ, լատիններ, որոնց գիրը եւ հռոմներն են գործածում, իսպանացիք, հույներ, մարեր, հայեր:

Խորենացու վկայությամբ, Բարդածան ասորի պատմագիրը, որ Եդեսիայից էր, մտավ Անի կամ Հանի ամրոցը, կարդաց Ողյումպ քրմի մեհենական պատմությունը, որի մեջ թագավորների գործերի հետ միասին հիշատակված էր Տիգրան վերջին հայոց թագավորի ձեռքով նրա եղբայր Մաժան քրմապետի գերեզմանին կառուցված բագինը Բագրեւանդի Բագավանում: Ի՞նչ լեզվով էր գրված այդ մատյանը – եթե Բարդածանը, ինչպես վկայում է Խորենացին, այդ պատմությունը փոխադրել է ասորերենի եւ ապա հունարենի, նշանակում է՝ մեհենական պատմության բնագիրը պետք է եղած լիներ հայերեն եւ գրված հայերեն գրերով:



Ուսումնասիրողներից ոմանք, ինչպես Ա. Աբրահամյանը, ենթադրում են, թե մատյանը գրված է եղել արամեական գրով, բայց այս կարծիքը հիմնավոր չէ: Ասորիներն իրենք իսկ արամեական գիր են գործածում հատկապես Եդեսիայի շրջանում: Նույնը վերաբերում է Տիր աստծո մեհյանին: Գերմանացի խոշոր հայագետ Յ. Մարկվարտը իր «Հայոց այբուբենի ծագումը եւ Մաշտոցի կենսագրությունը» ուսումնասիրության մեջ ժխտում է հայ մատենագրության գոյությունը մինչեւ V դարը հետեւյալ փաստարկով. «Այս երկրի լեզվով չէր գրվել դեռ ոչ մի տող, որովհետեւ այն ժամանակվա հայտնի այբուբեններից եւ ոչ մեկը ի վիճակի չէր արտահայտելու հայերեն բազմաթիվ ու դժվարին հնչյունները»: Գերմանացի հայագետի այս ուշագրավ միտքը մեզ բերում է հակադարձ տրամաբանության՝ եթե նախամաշտոցյան շրջանում եղել է հայ մատենագրություն, ապա դա կարող էր լինել միայն հայերեն այբուբենով, եւ ոչ թե արամեատառ կամ հունատառ: Եվ առհասարակ, մի շատ բնական հարց է ծագում. հնարավո՞ր է արդյոք, որ ժողովուրդն ունենա գրի ու դպրության Տիր աստված, այդ Տիր աստծուն նվիրված դպրության մեհյան, բայց սեփական գիր եւ դպրություն չունենա: Օտար դպրության, օտարագիր եւ օտարալեզու մատենագրության համար հայրենի աստվածություն չի ստեղծվում:

XIII դարի հայ պատմիչ Վարդան Արեւելցին (Պատմութիւն տիեզերական, Մոսկվա 1861, էջ 70) վկայում է Լեւոն արքայի օրոք Կիլիկիայում հայտնաբերված դրամի մասին, որի վրա հայերեն լեզվով դրոշմված են եղել հեթանոս հայ թագավորների անուններ, որով եւ պատմիչը հաստատում է Մեսրոպ Մաշտոցից առաջ հայերեն գրերի գոյությունը. «Եւ զի լեալ է հայերէն գիր ի հնոյն – վկայեցաւ ի ժամանակաս Լեւոնի արքայի. զի գտաւ դրամ ի Կիլիկիա հայերէն գրով դրոշմեալ զանուն կռապաշտ թագաւորացն Հայկազանց»: Նման հարցադրումներն արդեն իսկ իր մեջ կրում է նախամաշտոցյան գրի գաղափարը, որն ունի կողմնակիցներ, բայցեւ ավելի մեծ թվով հակառակորդներ, որոնք կարծում են, թե նախամաշտոցյան գիրը կարող է նսեմացնել Մաշտոցի հանճարը: Կատարյալ թյուրիմացություն: Ահավասիկ մեր հին հեղինակներից շատերը եւ առաջին հերթին 5-րդ դարի ներկայացուցիչները՝ սկսած Սահակ Պարթեւից եւ Մեսրոպ Մաշտոցից, նրանց աշակերտներ Կորյունը, Դավիթ Անհաղթ փիլիսոփան եւ Մովսես Խորենացին, ապա եւ Ղազար Փարպեցին եւ այլք, ընդունում են հեթանոսության շրջանում հայոց դպրության գոյությունը. հայոց գրերի գյուտի 1600-ամյակին նվիրված միջազգային գիտաժողովում իմ զեկուցման մեջ ես ցույց տվեցի, որ ինքը Մաշտոցը, երկար ժամանակ Եդեսիայում եւ Ասորիքում՝ դպրության հեթանոս ճարտարների մոտ որոնել է հայոց հին գրի ամբողջական այբուբենը: Վերը իմ հիշատակած Փիլոն Եբրայեցին՝ իր ժամանակի ճանաչված մտածողներից մեկը, որին Էնգելսը քրիստոնեության հայր է անվանում, իր եզակի վկայությամբ գալիս է հաստատելու հայալեզու գրականության իրողությունը դեռեւս մեր թվարկության սկզբին՝ Մեսրոպ Մաշտոցից 4 դար առաջ:

*Ալբերտ ՄՈՒՇԵՂՅԱՆ*
*Բանասիրական գիտությունների դոկտոր*

# Հեռավոր այմարները խոսում են մեր մայրենիով

Պարզվում է, որ Կենտրոնական Ամերիկայում՝ Տիտիկակա լճի ավազանում, ապրում է մի ժողովուրդ՝ այմարա, որը լեզվական կապ ունի հայերի հետ: Նա գործածում է բազմաթիվ բառեր, որ հայերենի փոխառություններ են: Այս բացահայտման հեղինակը բանասիրական գիտությունների թեկնածու Մերի Սարգսյանն է: Նա ռուսական բանասիրության մասնագետ է, թարգմանություններ է արել ռադիոֆիզիկայի, ճարտարապետության ոլորտներում, հայերեն է թարգմանել ակադեմիկոս Պարիս Հերունու «Հայերը եւ հնագույն Հայաստանը» գիրքը: 2011 թ. նրա թարգմանությամբ տպագրվեց Անաստասիա Ցվետաեւայի «Մոգական զանգահարության վարպետը. ասք հանճարի մասին» գիրքը՝ հայազգի երաժիշտ Կոնստանտին Սարաջեւի մասին, որը մեկ օկտավայում լսում էր 1701 հնչյուն այն դեպքում, երբ սովորական մարդն ի վիճակի է լսել ընդամենը 23-ը: Մերի Սարգսյանի հետ զրույցը այմարա ժողովրդին առնչվող ուշագրավ բացահայտումների մասին է:



– Միշտ մտածում էի, թե ի՞նչ է նշանակում «Սասուն» բառը, ինչու՞ Աճառյանի կամ մեկ այլ բառարանում դրա ստուգաբանությունը չկա, – իր զրույցն այսպես սկսեց իմ զրուցակիցը: – Մենք ունենք Սասուն երկրի անուն, սարերի անուն եւ «անսասան» բառը, ուրիշ ոչինչ: Որոշ գրքերից իմացա այմարա հին ժողովրդի մասին, որը, ըստ ուսումնասիրողների, աշխարհի ամենահին լեզուներից մեկն ունի, իր մշակույթով ծաղկել է 15 հազար տարի առաջ, եւ ունեցել լեգենդ: Լեգենդ, որը կրկնվում է մի քանի ժողովուրդների մոտ: Պատմում են, որ ծովով իրենց մոտ եկան սպիտակամորթ, զանգրահեր, շիկահեր, կապտաչյա մարդիկ, որոնք համարվել են իրենց աստվածները, որովհետեւ գալով այստեղ՝ իրենց սովորեցրել

⊃23

# «Եվրատեսիլ-2015» երգի մրցույթում




Հայաստանն այս տարի նորովի կներկայանա «Եվրատեսիլ-2015» երգի մրցույթում: Հավատարիմ մնալով մրցույթի այս տարվա նշանաբանին, ոգեշնչվելով Հայոց ցեղասպանության 100-ամյա տարելիցի խորհրդանիշ անմոռուկի գաղափարով, ինչպես նաև առաջնորդվելով բազմաթիվ սփյուռքահայերի ցանկությամբ, ովքեր միշտ եղել են եվրատեսիլյան մեր պատվիրակների կողքին, Հանրային հեռուստաընկերության ստեղծագործական խումբը որոշել է մրցույթին ներկայացնել նոր ձևաչափ:

Որոշվել է այս տարի համախմբել 1915 թ-ին աշխարհի 5 մայրցամաքներում (Եվրոպա, Ասիա, Ամերիկա, Աֆրիկա, Ավստրալիա) սփռված հայ ժողովրդի նոր սերնդին:

Խմբում ծագումով հայ 5 երգիչներ են, ովքեր զուգակցվում են անմոռուկի 5 թերթիկների հետ, իսկ Հայաստանից կմիանա ևս մեկ մասնակից, ով կհամախմբի թերթիկները: Հատուկ մրցույթի համար ձևավորվելիք խումբը կկրի «Genealogy» անվանումը՝ 6 արտիստ, 6 ճակատագիր, 1 պատմություն:

Երգի վերնագիրն է՝ «Don't deny» («Մի՛ ժխտիր»):

Եվրոպան ներկայացնող Եսայի Ալթունյանը ֆրանսիացի երգիչ-երգահան է: Երգել է «Pop Idol» խմբում, ապա որպես մենակատար իր իսկ գրած երգերով մասնակցել է բազմապիսի հեռուստաշոուների, համագործակցել մաեստրո Միշել Լեգրանի հետ: Այժմ Եսային գործունեություն է ծավալում նաև ԱՄՆ-ում: Ինչ վերաբերում է Հայոց թեմային, ապա երգիչը, կարելի է ասել, մեծացել է Եղեռնի մասին պատմությունների ներքո: Նրա պապը՝ ջարդերից մազապուրծ եղած Նշանը, անգամ գիրք է գրել՝ նկարագրելով 1915-ին իր տեսած արհավիրքը: Ուստի պատահական չէ, որ վերջերս՝ ցեղասպանության 100-րդ տարելիցի առիթով Եսային նկարահանեց «Je n'oublie pas» («Չեմ մոռանա») երգի տեսահոլովակը:

ԱՄՆ-ի ներկայացուցիչ Թամար Կապրելյանը ծնվել է Արիզոնա նահանգի Սքոթսդեյլ քաղաքում հայ-հրեա-բրիտանական ընտանիքում: Ներկայումս բնակվում և ստեղծագործում է Նյու Յորքում: Նա իր կարիերան սկսել է 2008-ին՝ հաղթելով հայտնի «One Republic» խմբի կազմակերպած մրցույթում: 2010-ին թողարկել է իր հեղինակային երգերի ալբոմը՝ ստեղծագործելով փոփ ռոք ոճում: Եղեռնի մասին լսել է Արևմտյան Հայաստանի Խարբերդ քաղաքում ծնված մորական պապիկից, ում ազգանունն էլ այժմ կրում է:

Աֆրիկան ներկայացնող Վահե Թիլբյանը ապրում և ստեղծագործում է Եթովպիայի մայրաքաղաք Ադիս Աբեբայում: Նրա երաժշտությունը դժվար է մեկ բառով բնորոշել. ստեղծագործում է մի շարք ոճերում՝ ռոք, r&b, տեխնո և տարբեր ազգերի երաժշտություն... Առաջադրվել է մի քանի հեղինակավոր երաժշտական մրցանակների, 2012-ին թողարկել է «Mixology» ալբոմը, որը նրան մեծ հաջողություն բերեց միջազգային երգասպարեզում:

Ասիայի ներկայացուցիչ Սթեֆանի Թոփալյանը (հայրը ամերիկահայ է, մայրը՝ ճապոնուհի) ծնվել է Լոս Անջելեսում, սակայն երգչուհու կարիերան սկսել է Ճապոնիայում՝ 13 տարեկանում: Համագործակցելով հայտնի ճապոնացի պրոդյուսեր Ջո

➲33

22➲

## Հեռավոր այմարները խոսում են մեր մայրենիով

են ձուլագործության գաղտնիքները, նաեւ ճարտարապետական գաղտնիքներ, սովորեցրել են միակնությունը: Այդ ժամանակներում ձուլագործությունն առաջին հերթին Հայաստանում է եղել: Շումերերեն գրություններում նաեւ հիշատակվում է անուն՝ Իոաննեշ: Դժվար չէ կռահել, որ դա Հովհաննեսն է: Կարելի է ենթադրել, եթե՝ չպնդել, որ եկվորները հայեր են եղել: Նույն լեգենդում կա իրենց «Վիրակոչա» անունը, եւ եթե շատ համարձակ լինենք, ապա կարող ենք ստուգաբանել որպես «ի վերուստ կոչված»: Գոյություն ունի Կալասասայա հրապարակ, որտեղ կանգնեցված է Վիրակոչայի բարձր արձանը՝ շուրջը քարեր: «Կալասասայա» բառը այմարերենից թարգմանվում է «կանգուն քարեր»: «Կալ»՝ հայերեն քարն է: «Քար» հայերեն արմատը մտել է աշխարհի բոլոր ժողովուրդների լեզուների մեջ: Ես հիշեցնեմ, որ «Սասունցի Դավիթ» էպոսում Սանասարի եւ Բաղդասարի կառուցած քաղաքն անվանակոչած ծերուկը բացականչեց՝ «սա հո սասունն է», այսինքն՝ պինդ, ամրակուռ: «Կալասասայա» եւ «Սասուն» նույն նշանակությունն ունեն՝ անսասան, պինդ: Ես որոշեցի ուսումնասիրել այդ լեզուն, հասկանալ, թե մեր Սասունն ու Կալասասայան ինչպես համընկան: Գտանք 600 բառանոց այմարա-անգլերեն բառարան: Վեց ամիս ինքս ինձ թեւ տալով ու համոզելով, ինքս ինձ չհավատալով ուսումնասիրեցի: Իմ առաջ բացվեց մի զարմանահրաշ աշխարհ: 57 բառ՝ մոտ 10 տոկոսը, հայարմատ էին: Գիտության դոկտորներն ասացին, որ նույնիսկ երեք բառի նույնարմատ լինելը առիթ է մտահոգվելու այն մասին, որ կա լեզվական փոխառություն:

***– Է՞լ որ բառերում համընկնումներ կան:***

– Օրինակ՝ «փիսի» նշանակում է կատու, «փուրակա»՝ փոր, «արմջանա»՝ մոռանալ, «կիտա»՝ ձկնկիթ, «ջուրա»՝ ջուր: 2004 թ. հոդված պատրաստեցի եւ տարա ԳԱԱ «Լրաբերին»: Մեծ ոգեւորությամբ ընդունեցին, եւ դրեցին հերթի: Երկու տարի մնաց հերթում, հետո էլ գլխավոր խմբագիրը կանչեց, թե՝ չենք տպելու, հոդվածը խիստ հայամետական է: Ասի՝ թուրքամետակա՞ն պիտի լիներ, որ տպագրեիք: Հոդվածը տպագրվեց այլ հանդեսներում:

***– Իսկ այդ «ենթադրյալ» հայերը ձուլվել են տեղացիների՞ն, վերջիններիս սերունդները կենսաբանորեն նման չե՞ն հայերին:***

– 2009 թ. Նիկարագուայից էլեկտրոնային փոստով նամակ եկավ: Այդ երկրի կենսաբանական գիտությունների դոկտոր, ազգությամբ ֆինն Սեպոտիուսաններ գրում էր, որ հիացած է իմ հոդվածով, մի տասնհինգ միջազգային կոնֆերանսներում զեկուցել է այն: Հոդվածը հաստատել էր նրանց կենսաբանական տեսությունն այն մասին, որ որոշ հին ժողովուրդներ կարող են ունենալ ընդհանուր գեներ: Այմարների մեջ նրանք հայկական գեներ են գտել: Ես չեմ կարող դա ոչ պնդել, ոչ հաստատել, քանի-որ կենսաբան չեմ, կպնդեմ միայն լեզվական նմանությունը: Եվ այդ գիտնականը խնդրեց շարունակել հոդվածը: Ուղարկեց նոր՝ արդեն 3 հազար բառանոց բառարան, այմարա-իսպաներեն, եւ բնականաբար նոր բառեր ավելացան իմ հոդվածում:

***– Հիմա ուսումնասիրությունը շարունակու՞մ եք:***

– Արդեն հաստատվել են լեզվական նմանությունները: Ես ուրախ եմ, որ դա հայամետական աշխատանք է, ու երեւի այդ պատճառով էլ շատերի դուրը չի գալիս:

***– Պարիս Հերունու հայագիտական աշխատությունը, որ թարգմանել եք, երեւի նույնպես շատերի դուրը չէր գալիս:***

– Նա աշխատությունը գրել է անգլերենով, որպեսզի աշխարհը կարդա, որ նախաքրիստոնեական Հայաստանն ունեցել է շատ բարձր մշակույթ, գիր, եւ որ սխալ է, թե Մաշտոցի ականջին Աստված փսփսաց, ու նա էլ տառերը շարեց, ու մենք ունեցանք գանձեր՝ շարականներ, որ աղոթքներ են, ու հանկարծ «ծլեց» Խորենացին, որն առաջին ժամանակագիրն է աշխարհում... Այդպես հնարավոր չէ:

***– Ինչու՞ է կեղծվում այդ հարցը:***

– Այն էլ՝ մեր եկեղեցու կողմից: Որ հավատացյալները հանկարծ չկասկածեն, որ Քրիստոսը... Ոչ ոք ոչինչ չի կասկածի: Քրիստոսն էլ դեմ կլիներ ամեն տեսակ կեղծիքի: Ինչպե՞ս մենք կարող էինք միանգամից «իմանալ զբանս հանճարոյ» եւ հանճարներ տալ աշխարհին: Մարդկության պատմությունն ընթանում է դանդաղ, էվոլյուցիոն ճանապարհով: Նույնն էլ՝ լեզվի զարգացումը: Հայոց լեզուն ունի 11 հազար բուն արմատ, որից 4 հազարը լրիվ, իսկ 5,5 հազարը մոտիկ իդենտիկ են սանսկրիտի՝ հին հնդկերեն մեռած լեզվի հետ: Այսինքն նույնն են: Հայ հին գրաբարը եւ սանսկրիտը ունեն միարմատ չորս հազար բառ: Հնդկաստանում ասում են, որ սանսկրիտը հայերեն գրաբարի փոքր քույրն է: Հնդկական «Ռամայանա» էպոսը ստեղծված է եղել ոչ թե Հնդկաստանում, այլ իրենց բուն հայրենիքում, եւ այդ էպոսում կա կարոտ, ցավով ու սիրով հիշում են իրենց հին երկիրը, որն ուներ «կապույտ, ձյունապատ, բարձրաբերձ սարեր»: Ուղղակի կրկնում եմ շատ ուսումնասիրողների, որոնք պնդում են, թե քանի-որ Հայաստանը հանդիսանում է քաղաքակրթության օրրանը, հնդիկներն այստեղից են գնացել արեւելք:

***Գագիկ ԱՂԲԱԼՅԱՆ***

# Հրանուշ ՀԱԿՈԲՅԱՆ. ՀԱՅՐԵՆԻՔԸ ՍԻՐՈՒՄ ԵՍ, ՈՐՈՎՀԵՏԵՎ ԱՅՆ ՔՈՆՆ Է, ԲԻԲԼԻԱԿԱՆ Է, ՀԱՎԵՐԺ Է...

**ՀՀ սփյուռքի նախարար Հրանուշ ՀԱԿՈԲՅԱՆԻ հարցազրույցը «Ավանգարդում» Ցեղասպանության 100-րդ տարելիցի առիթով**

Այս տխուր տարելիցը յուրատիպ ազդակ կարող է դառնալ (ու պետք է դառնա) աշխարհին ևս մեկ անգամ զգոնության կոչելու: Դարավոր մեր ցավը պատմության դատին հանձնելով՝ շարունակելու ենք ամեն ամ խնկարկել անմեղ զոհերի հիշատակը, որի առջև պարտք ունենք՝ արդար հատուցման պահանջատիրություն:

Արյունռուշտ մեր հարևանը անվրեպ գործեց տեղահանալով ու ցեղասպանելով Երկիր մոլորակում իր գոյությունը դարերով հաստատած, իր արարումով հռչակված մի ժողովրդի: Սակայն սխալվեց իր հաշվարկներում: Նախճիրից մազապուրծ՝ հայերը «Անտունի» երգեցին, մրմռքացին՝ «Քելե լաո», բայց նաև՝ «Ով մռռանա» երդվեցին: Այդ երդումն էլ ժառանգականության մոգությամբ սերնդեսերունդ փոխանցվեց: Այն օրերի կույր ու խուլ աշխարհի աչք ու ականջն էլ բացվեց: Մանավանդ՝ անպատիժ մնացած կամ լռելյայն համաձայնության արժանացած ցեղասպանությունը կրկնվեց իրեական Հոլոքոստի տեսքով: Ու էլի կրկնվելու է՝ անպատժելիության դեպքում, զի չարիքը մեծանալու և կրկնելու «գեշ» հատկություն ունի:

Հայոց եղեռնագործության հաջորդ 100 տարիները կարող է ու պետք է դառնա հատուցման հարյուրամյակ: Դրա «հիմնարկեքն» այսօր է կատարվում՝ արդեն պետականություն կերտող ժողովրդի հայրենիքում: Եվ դրանում իր ակտիվ մասնակցությունն է ունենալու ՀՀ սփյուռքի նախարարությունը:

***– Ցեղասպանությունը, Հայ դատը, մեր պահանջատիրությունը այն հենքն են, որի շուրջ միակամ են բոլոր հայերը՝ Հայաստանում և ի սփյուռս աշխարհի: Հայրենիքի հետ նրանց կապող օղակ է Սփյուռքի նախարարությունը, որի գործունեությունն այսօր սերտորեն աղերսվում է Հայոց Եղեռնի թեմաներին: Ի՞նչ ակնկալիքներ կարող է ունենալ մեր ժողովուրդը՝ պատմական դարձող 2015-ից.***

– Ցեղասպանության 100-րդ տարելիցը նախևառաջ քաղաքական մեծ նշանակություն ունի: Հայ ժողովուրդը, ինչպես նաև միջազգային առաջադեմ հանրությունը պահանջում են, որ աշխարհի պետությունները, այդ թվում՝ Թուրքիան, ճանաչեն հայոց ցեղասպանությունը: Ճանաչելով ցեղասպանությունը նշանակում է, որ այդ երկիրը հարգում է մարդու իրավունքները, հարգում է ՄԱԿ-ի կողմից ընդունված կոնվենցիաները և միջազգային պայմանագրերը, և իր քաղաքական որոշումը ընդունելով, դատապարտելով Ցեղասպանություն կոչվող ոճիրը՝ նպատակ ունի, որպեսզի այլևս երբեք և որևէ երկրում չկրկնվի նման հրեշագործություն: Սա է ճանաչման հիմնական նպատակը, որին մենք նախանձախնդիր և հետևողական ենք, քանի որ որպես ազգ, ժողովուրդ ապրել ենք ցեղասպանության բոլոր սարսափները, կրել ենք այդ անչափելի հանցագործության հետևանքները: Հետևաբար ուրիշ ո՞վ, եթե ոչ Ցեղասպանությունից վերապրած ժողովուրդը պետք է պայքարի՝ նմանատիպ հանցագործությունն աշխարհի որևէ անկյունում այլևս չկրկնվելու համար: Պատահական չէ, որ թե՛ քաղաքական աշխարհը, թե՛



իրավաբաններն ու պատմաբանները, թե՛ հետազոտողներն ու հոգեբանները շեշտում են, որ եթե ժամանակին ճանաչվեր և դատապարտվեր Հայոց ցեղասպանությունը, ապա հրեական Հոլոքոստ լինել չէ՛ր կարող: Սա, կարծում եմ՝ գլխավոր ուղերձն է մարդկությանը: Այս ուղերձը տեղ է գտել նաև վերջերս Ցեղասպանության 100-րդ տարելիցի միջոցառումները համակարգող պետական հանձնաժողովի կողմից ընդունված և Ցեղասպանության զոհերի հուշահամալիրում Հայաստանի Հանրապետության Նախագահի կողմից հրապարակված Ցեղասպանության 100-րդ տարելիցի համահայկական հռչակագրում, որն արտահայտում է ոչ թե սոսկ Հայաստանի Հանրապետության կամ Լեռնային Ղարաբաղի Հանրապետության ղեկավարության, այլ համայն հայության առանցքային կառույցների և կազմակերպությունների ներկայացուցիչների միահամուռ տեսակետները: Մենք բոլորին ապացուցեցինք, որ չկա անհամաձայնություն Հայաստանի և Սփյուռքի միջև, չկա հակասություն համազգային խնդիրներում, որ ընդունված փաստաթուղթը համազգային, համահայկական փաստաթուղթ է: Այն դառնալու է ուղենիշ և՛ երկու հայկական պետությունների, և՛ հայկական բոլոր կազմակերպությունների, և՛ համայն հայության համար:

Կարևոր ակնկալիք է նաև հայ ժողովրդի համար Թուրքիայում քաղաքացիական հասարակության ձևավորումը: Այսօր Թուրքիայում տեղի են ունենում գործընթացներ, որոնք խոսում են այդ պետության մեջ եղած կարծրատիպերի վերացման մասին: Մենք ականատեսն ենք այն ամենի, որ Թուրքիայում որոշակի շրջանակների կողմից խոսվում է Ցեղասպանության մասին: Կարևոր առաջընթաց է այն, որ «Կանաչների» կուսակցությունը ընդունեց Հայոց ցեղասպանության փաստը, որ Օջալանը հայտնի նամակով խոսեց նաև Ցեղասպանության մասին: Մենք պետք է հավուր պատշաճի գնահատենք այն քուրդ պատգամավորին, ով քաղաքական խիզախություն ունեցավ Թուրքիո Մեծ ժողովում ներկայացնել Ցեղասպանության ճանաչման մասին նախագիծը: Եթե դիտարկելու լինենք, թե այս ամենի հետևում ինչպիսի գործընթացներ են թաքնված, ապա ակնհայտ է, որ Թուրքիայում արդեն կա մտավորականների, քաղաքական գործիչների մի շերտ, ովքեր առերեսվել և ընդունում են իրենց իսկական, ոչ թե հորինված պատմությունը, ովքեր շարունակում են պայքարել Թուրքիայում արդարության հաստատման համար: Չեմ կարող չհիշատակել այն հանգամանքը, որ Թուրքիայում ստեղծվել է մի իրավիճակ, երբ ազգային փոքրամասնությունները, որոնք դարից ավելի լռելյայն համաձայնել են, թե իրենք բոլորը թուրք են, այսօր բացահայտորեն հայտարարում են իրենց ազգային արմատների, իրենց ոչ թուրք լինելու մասին, և ինքնության վերականգնման ճանապարհին ավելի շատ իսլամացած հայեր բացահայտում են իրենց հայկական արմատները: Այս իրողությանը կարելի է տալ գնահատական. Թուրքիայում ինքնության ճգնաժամ է; Իսլամացած հայերի հիմնախնդիրները և՛ քաղաքական, և՛ բարոյահոգեբանական ուսումնասիրությունների նյութ են: ՀՀ սփյուռքի նախարարությունը գիտնականների հետ զբաղվում է այս խնդիրներով, իրականացնում է որոշակի ծրագրեր, ընդառաջ գնում այն հայերին, ովքեր ցանկություն ունեն վերադառնալ իրենց ինքնությանը, իրենց արմատներին, ուզում են սովորել մայրենի լեզուն: Արդեն իսկ ազդակներ կան, որ պատմական Տիգրանակերտում հայկական դպրոցներ են հիմնվելու: Սա ամենակարևոր իրողություններից են: Հարյուրավոր, եթե ոչ հազարավոր մարդիկ ցանկություն են հայտնել հայերեն սովորել: Մեր կողմից իրականացվել են կրթական, մշակութային, համայնքային, երիտասարդական և այլ բնույթի ձեռնարկներ, որոնք իրենց մեջ հայրենասիրական հզոր լիցք են պարունակում: Հայաստանում այսօր վերապատրաստվում են երկու երիտասարդ՝ Արևմտյան Հայաստանում հայերեն ուսուցանելու համար:

***– Նշանավոր շատ մարդիկ, պետական այրեր ևս բարի կամք են դրսևորում՝ բարոյապես աջակցելով, հավանություն տալով ծրագրերին:***

– Չեմ կարող շնորհակալ չլինել բոլոր այն հայտնի դեմքերին՝ քաղաքական-կրթական-մշակութային գործիչներին, ովքեր այսօր միավորվում են Ցեղասպանության դեմ շարժման մեջ: Չեմ կարող չասել շնորհակալություն այն մարդկանց, ովքեր «Ո՛չ ցեղասպանությանը» ֆորումին պետք է մասնակցեն: Ինչպե՞ս երախտապարտ չլինել Ֆրանսիայի նախագահին, ով առանց վարանելու հայտարարեց Ապրիլի 24-ին Հայաստանում իր ստույգ ներկայության մասին և, նույնիսկ գտնելու է հնարավորություն՝ Փարիզում մասնակցելու համայնքային միջոցառումներին: Կամ՝ Ուրուգվայի նախագահը, ում պաշտոնավարման ժամկետը թեև լրանում է, բայց պատրաստ է իր բարձր հեղինակությունը և բոլոր հնարավորությունները ներդնել՝ Ցեղասպանության 100-րդ տարելիցը հավուր պատշաճի իր երկրում հիշատակելու համար:

***– Այն, ինչն արդարացիորեն Դուք գնահատում եք (մարդիկ իրավունք են ստացել իրենց ազգությունը չթաքցնել, անկաշկանդ խոսել հայերի կոտորածի մասին և այլն)՝ հրաշալի է: Բայց***

➲25

24➲

***արդյո՞ք այդ ամենը ևս ի նպաստ Թուրքիայի հեղինակության չէ. որպեսզի մի ամբողջ ազգ տեղահանած ու յաթաղանի մատնած ոճրագործը ճերմակ օձիքով ներկայանա աշխարհին՝ շարունակելով հերքել իր հանցանքը:***

– Ցավով եմ նշում, որ մի տարի առաջ Թուրքիայի բարձր ղեկավարությունը փորձում էր «ցավակցել» իր ժողովրդին ապրիլի 24-ի առթիվ, իսկ այս տարի այդ օրը փորձում է տոնի վերածել, հրավիրել տարբեր երկրների ղեկավարների: Կարծում եմ՝ Հայաստանի Նախագահի պատասխան նամակը Թուրքիայի նախագահին լուրջ ուղերձ էր պարունակում նաև այլ երկրների ղեկավարների համար: Ընդունել Թուրքիայի նախագահի հրավերը նշանակում է տնտեսական, երկկողմանի շահերը վեր դասել համամարդկային արժեքներից, մարդկային իրավունքներից: Այս հրավերները ընդունելը կամ մերժելը կբացահայտեն աշխարհի իրական դեմքը: Ցավոք, Թուրքիան 100 տարի անց էլ չի փոխել իր քաղաքականությունը: Իմ վերը նշածը վերաբերում է ոչ թե թուրք հասարակությանը, այլ՝ իշխանությանը: Ինչքան հասունանա թուրքական հասարակությունը և կարողանա ընդվզել իր պետության վարած քաղաքականության դեմ, այնքան ավելի վստահ կարող ենք ասել, որ մեր ջանքերն իզուր չեն անցել: Եվ հետո, երբ ասում ենք, որ խնդիրը վերաբերում է Օսմանյան կայսրության և երիտթուրքերի իշխանությանը, ապա այսօրվա թուրքական իշխանությունը կանգ պետք է առնի և չշարունակի նրանց տմարդի գործերը, քանզի կեղծելով, ժխտելով դառնում են հանցակից այդ մեծ ողբերգությանը: Ուզում ենք ասել մի դարձիր հանցակից, քանի որ իրավահաջորդ լինելով և ձեր վրա վերցնելով անցյալի բեռը, դուք նմանվում եք նրանց:

***– Ակնհայտ է, որ Թուրքիան ևս պակաս ջանադրությամբ չի նախապատրաստվել իր նախճրագործության տարելիցին: Արել և անում է ամեն ինչ՝ մեր պահանջատիրության, պատմական իրողությունների «ծայնը» խլացնելու:***

– Կարծում եմ՝ Հայկական հարցը մեծ փսաս է պատճառում Թուրքիային, որովհետև տարեկան նա միլիարդավոր դոլարներ է ծախսում՝ պատմությունը կեղծելու, ապատեղեկատվություն տարածելու, լոբբիստական կառույցներ վարձելու, զանգվածային լրատվամիջոցներում իր օգտին հոդվածներ տպագրելու համար: Այդ ինչպե՞ս է պատահում, որ նրանք հայկական գերեզմանոցը կամ հայության համայնքային կալվածքներ են վերադարձնում և կեղծ բարեպաշտ ձևանում: Եթե չէին հափշտակել, ապա ի՞նչն են հետ տալիս: Եթե ցեղասպանություն չէր եղել, ապա այդ դեպքում դրանք ինչո՞ւ են իրենց սեփականությունը դարձել: Իրեն քաղաքական մեծ գործիչ համարող Էրդողանը պետք է հաշվի առնի, որ սա 1915 թվականը չէ, երբ կարելի էր գլխատել մտավորականներին, ազգի ոչնչացման ծրագիր մշակել: Այսօր մեր ժողովուրդը 21-րդ դար է հասել կիրթ, գրագետ, զարգացած, 10 միլիոն դարձած, աշխարհի 100 և ավելի երկրներում հիմնավորված և պահանջատեր. նա չի լռելու:

Եվ որպեսզի Թուրքիան չշարունակի սևացնել իր անունը, հեղինակությունը, իր հետագան՝ ճիշտ կանի կանգ առնի, օրինակ վերցնի Գերմանիայից, ճանաչի Ցեղասպանությունը և վերջ դնի թշնամությանը, դադարեցնի պատմության կեղծարարությունը: Պետք է Թուրքիան իր մեջ ուժ գտնի և ձերբազատվի այն ամենից, ինչ արվել է մեկ դար առաջ:

***– Մեր պահանջատիրության շրջանակներում արդյո՞ք ներառվում են տարածքային խնդիրներ: Արդյո՞ք ժամանակը չէ, որ նույն հետևողականությամբ աշխարհի տրամաբանության մեջ տեղավորենք Արևմտյան Հայաստան արտահայտությունը:***

– 2011 թ. Սփյուռքի նախարարությունը հայ իրավաբանների համահայկական համաժողով հրավիրեց և ստեղծեց միջազգային ասպարեզում շատ հայտնի մասնագետների խումբ ՀՀ սահմանադրական դատարանի նախագահ Գագիկ Հարությունյանի գլխավորությամբ: Նպատակը իրավական թղթածրար ստեղծելն է: Մենք այն կարծիքին ենք, որ այսօր հրապարակի վրա կա 3 կարևորագույն խնդիր: Առաջինը՝ ժառանգների իրավունքների վերականգնում. մարդկային, անհատական իրավունքներ: Ապա համայնքային իրավունքների վերականգնում. խոսքը մեր բոլոր համայնքների մասին է՝ իրենց կալվածքներով, ունեցվածքով, եկեղեցիներով և այլն, հրապարակի վրա է այս ուղղությամբ Ամենայն Հայոց կաթողիկոս Գարեգին Բ-ի և Մեծի Տանն Կիլիկիո կաթողիկոս Արամ Ա-ի հայտնի հայտարարությունը: Եվ հարցերի 3-րդ խումբը համազգային խնդիրն է: Համազգային խնդիրները իրավական հարթության վրա ուսումնասիրելով ի՞նչ արդյունքի կհանգենք: Դրա համար մասնագետներ են աշխատում: Ես այն կարծիքին եմ, որ պետք չէ ավելորդ հայտարարություններ անել, որովհետև յուրաքանչյուրն այլ կերպ է պատկերացնում այդ պահանջատիրությունը: Այդ իսկ պատճառով պետք է խնդիրը թողնել միջազգային իրավունքի մասնագետներին: Ուրախ եմ, որ այս ուղղությամբ իրավական փաստաթղթերը և անառարկելի հիմքերը ավելանում են: Ապրիլի 22-23-ին մենք «Ո՛չ ցեղասպանությանը» ֆորումի շրջանակներում գումարելու ենք իրավաբանների միջազգային հաջորդ համաժողովը: Այդ համաժողովում շարունակելու ենք քննարկել ունեցվածքի, գույքի և մնացած հիմնախնդիրները: Եվ երբ իրավական թղթածրարը վերջնական տեսքով պատրաստ կլինի, քաղաքական լուրջ քննարկումներ կձեռնարկվեն:

***– Անշուշտ՝ փոխհատուցման խնդիրը նույնպես չի կարող անտեսվել:***

– Մինչև մենք Թուրքիայի քաղաքական օրակարգ չհասցնենք Ցեղասպանության ճանաչման խնդիրը, փոխհատուցման մասին խոսելն անժամանակ է: Որոշ դեպքերում մենք պետք է հետևենք զարգացումներին և հետևողականորեն ազդենք այդ զարգացումների վրա՝ արագացնելով դրանք, առաջ տանելով ճշմարտությունը: Համոզված եմ, որ հաջողելու ենք, որովհետև մեր պահանջն արդար է՝ հենված միջազգային իրավունքի վրա: Բազմաթիվ երկրներ արդեն ճանաչել են Հայոց Ցեղասպանությունը՝ այդ կերպ իրենց համախոհությունն արտահայտելով: Դրա արդյունքում Թուրքիան հասկանում է, որ ինքը մենակ խաղալ չի կարող: Եվ եթե մնացյալ հզոր տերությունները ճանաչեն, դա իրական ճնշում կլինի, և Թուրքիան այլևս անելիք չի ունենա:

***– Ի՞նչ եք կարծում, օրավուր պառակտվող մեր ժողովրդի համախմբման ազդակ կդառնա՞ ոգեկոչման այս տարին:***

– Ես այն կարծիքին եմ, որ յուրաքանչյուր հայ, մասնավորապես այս պատասխանատու հանգրվանում, պետք է վեր կանգնի բոլոր տեսակի հակամարտություններից, պառակտումներից, խժդժություններից, խմբային ու անձնական ամբիցիաներից և գիտակցի, որ կա համահայկական ցավ, համազգային դատ, որին պետք է հետամուտ լինենք ազգովի: Մինչ ապրիլ ցանկացած իրական թե շինծու ձեռնարկ, որը մեր քաղաքական կացության, սահմանների անհանգստությանն է բերում՝ անընդունելի է: Թուրքիայի նվիրական ցանկությունն է՝ սեպ խրել մեր միասնության թիկունքին, անդունդ առաջացնել Հայաստանի և Սփյուռքի միջև «Բաժանիր, որ տիրես» սկզբունքով: Հպարտությամբ, ուրախությամբ հայտնում եմ, որ դա Թուրքիային չի հաջողվի: Մենք պետք է որ պատմությունից դասեր քաղենք, ժամանակն է միավորվելու, Հայաստանը հզորացնելու, Արցախն անվտանգ, մեր սահմաններն անառիկ դարձնելու: Պիտի կոտրենք որոշ կարծրատիպեր: Հայրենիքը չեն սիրում այն պատճառով, որ այն շեն է (ինչպես՝ մորը չեն սիրում, որ նա հարուստ է). հայրենիքը սիրում ես, որովհետև այն քոնն է, բիբլիական է, հավերժ է...

# ՄԱՀԱՑԵԼ Է ԲԱՍԿԵՏԲՈԼԻ ՀԱՅԱԶԳԻ ՀԱՅՏՆԻ ՄԱՐԶԻՉ ՋԵՐԻ ԹԱՐԽԱՆՅԱՆԸ



**«Ես սիրում եմ հայկական ամեն ինչ: Պաշտում եմ մեր ազգային կերակուրները: Ես մեծացել եմ հայկական խոհանոցով: Նախկինում ամեն օր կարող էի խաղողի տերևով տոլմա ուտել: Իսկ գառի մսից խորովածը ուղղակի հրաշք է: Բայց հիմա բժիշկներն ինձ արգելում են ճարպոտ ուտելիքներ ուտել»:**

*ՋԵՐԻ ԹԱՐԽԱՆՅԱՆ*

84 տարեկան հասակում մահացել է բասկետբոլի հայտնի մարզիչ Ջերի Թարխանյանը: Այս մասին Թվիթերի իր միկրոբլոգում հայտնել է Թարխանյանի որդին՝ Դենի Թարխանյանը:

Մարզչական կարիերան սկսել է Կալիֆորնիայի բասկետբոլային դպրոցում 1956 թվականին: 1959-1961 թվականներին Կալիֆորնիայի Լանքաստեր քաղաքում մարզել է Antelope Valley Joint Union High School թիմը, այնուհետև 1961-1966 թվականներին Ռիվերսայդի, իսկ 1966-1968 թվականներին Փասադենայի քոլեջների թիմերը: Հաջողությունները Թարխանյանին հայտնի դարձրին, և նա կնքեց իր առաջին պայմանագիրը բասկետբոլի առաջին լիգայի Shark թիմի հետ:

➲26



*Լալա Մինասեան-Միսկարյան*

Հայոց ճակատագիրը՝ տարաբնույթ հանգամանքների բերումով, մեր ազգակիցներին տարածել է ի սփյուռս ողջ աշխարհի: Սփյուռքում հայ մնալը չափազանց դժվարին գործ է, և իրավամբ դրա համար հերոսական ճիգեր են պահանջվում:

Մեր ազգակիցներից մեկն է Լալա Մինասյան-Միսկարյանը: Ծնվել է Լոռվա Արճիս գյուղում՝ ուսուցչի ընտանիքում: Գյուղի դպրոցն ավարտելուց հետո ուսումը շարունակել է Երևանի պետական համալսարանում: Ամուսնացել և տեղափոխվել է մշտական բնակության Սիրիայի Հալեպ քաղաք: Ապրելով հեռավոր Սիրիայում, նրա հաղթաթուղթը եղել է հայ բառ ու բանի արարչությունը և հայոց գիրն է մնացել ապավենը՝ օտար շրջապատում պահպանելու ազգային ինքնագիտակցությունը: Նա մի քանի գրքի հեղինակ է: Նրա հոդվածները տպագրվել են բազմաթիվ հանդեսներում: Նա ականատեսն է ու պատմիչը այն ահավոր իրադարձությունների, որ տեղի են ունենում մեր օրերում Սիրիայում:

Հայ ժողովրդի համար ժամանակի մեծ խնդիր է Սիրիայի հայության այդ բեկորներին փրկելը, նրանց հայրենիքի հետ կապելն ու ներգրավելը հայրենասիրության նվիրական գործում:

Այս տեսակետից Լալա Միսկարյանի հոդվածները միաժամանակ և ուսուցողական են և դաստիարակչական՝ ունենալով մեծ նշանակություն Սիրիա-Հայաստան-Սփյուռք փոխհարաբերությունում: Ինքն իսկ կանխորոշելով իր տեղը սիրիահայ մշակութային կյանքում, նա կարողանում է պահպանել իր Հայի տեսակի լինելությունը, չդավաճանելով իր Ցեղի հոգուն:

***Կարեն ՄՂԴՍՅԱՆ***

# ՏՈԿԱ՛, ՍՈՒՐԻԱ...

Դուն՝ առաջին մարդուն խանձարուր եղած ստեղծարա՛ր հող,
Դուն՝ մարդկութեան լոյսի հնագո՛յն ակունք,
Հազարամեայ ճանապարհիդ փորձութիւններէն իմաստնացած ազնուազա՛րմ Տիկին:

Տոկա՛, թէեւ գիշակեր ագռաւներ կը թռչին հնագոյն փառքեր անթեղած անապատներուդ ու նոր խոստումով ծաղկող բարեբեր դաշտերուդ վրայէն,
Թէեւ աւարառու յելուզակները, հրեշտակներու դիմակներ հագուած՝ իրենց ծարաւը քու արիւնովդ կը յագեցնեն,
Թէեւ խաղաղութեան ու բարիքի խորհրդանիշ՝ մայրացած ձիթաստաններէդ ոսկի ձիթաիւղի տեղ որդիներուդ արիւնը կը հոսի,
Թէեւ «եղբայրներդ» Կայէնի փառքը գերադասեցին ու Յուդայի երեսուն արծաթը, քանզի յուդայածին էին,
Թէեւ բուերը կը վայեն ու կ՛անհամբերեն մօտալուտ վախճանդ գուժել խուլ ու կոյր աշխարհին,
Թէեւ որդիներուդ շարքերուն մէջ երկպառակութեան գայթակղիչ հունտեր կը ցանուին,
Թէեւ տակաւին իմաստութեանդ կաթը չծծած՝ անոնցմէ ոմանք պատիր խոստումներով կուրցած՝ վայրագ հովերէ կը քշուին ու մայրական սիրտդ կ՛արիւնեն:

Տոկա՛, Սուրի՛ա, խորագէտ Տիկի՛ն,
Դուն գիտես, որ այս չարանենգ մրրիկներն ալ պիտի անցնին ծովածուփ դաշտերուդ վրայէն ու պիտի երթան ծովէն անդին խեղդուելու իրենց իսկ չարութեան մէջ,
Դուն գիտես, որ խաւարի որդիները, Խաչը իրենց պատուար շինած ու Փրկիչին գերեզմանը շահարկելով՝ յաճախ փորձած են սեւով ծածկել արեւաշող դաշտերդ, բայց իրենք սուզած են իրենց խաւարին մէջ:
Դուն գիտես, թե եղէգները, թէեւ կը կորանան մրրիկներուն առջեւ, սակայն հուսկ ապա կը կանգնին գեղուղէշ՝ առաւել ամրացած ու տոկուն:
Դուն գիտես, թե թուխպերը որքան ալ որ կարկտահարեն, պիտի ելլէ՛ Արեւը ու նոր ծիլեր պիտի յորդին քու դաշտերուդ մէջ:

Տոկա՛, Սուրի՛ա, Մա՜յր բարութեան,
Շտկէ՛ որդեկորոյս մօր կորացող մէջքդ, քանզի ես եւս կեցած եմ ետիդ՝ իբրեւ որդիական նեցուկ հաստատուն,
Դո՛ւն, որ բարիքներուդ դռները բացիր, երբ քեզի եկայ իբրեւ տափաստաններու գորշ գայլերէն բիւրախոց, հալածական ու բնաւեր հաւք,
Դո՛ւն, որ եղար հաստատուն հողը ոտքիս տակ, տուիր ինծի անսակարկ ջերմութիւնը մայրական սիրտիդ ու ամրութիւնը եղբայրական բազուկիդ,
Դո՛ւն, որ քու արդար յարկիդ տակ լայնասրտօրէն հովանի եղար վտանգուած ինքնութիւնս պահպանելուն ու դարձար սիրելի՝ յափշտակուած սրբազան Հայրենիքիս հողին հանգոյն, Հիւանդ ու ժանտ այն ծեր գայլը, որ հայրենիքս յափշտակելով ամրացաւ, հիմա ալ ժանիքները բաց՝ զքեզ յօշոտողներու վոհմակին միացած՝ արիւնդ կը հեղէ, սակայն՝
Տոկա՛, սրբէ՛ արցունքդ ու ամրապնդուէ՛, գեղանի Սուրի՛ա,
Քանզի պիտի անէանայ ինչ որ ժամանակին է ու պիտի տեւէ՝ ինչ որ յաւերժին է: Պիտի շարունակեն լուրթ երկինքիդ տակ խաղաղ ցոլալ ցորենի արտերդ ու յաւերժական բարութեամբ պիտի խոկան յղի ձիթաստաններդ...

25➲

### ... ՀԱՅԱԶԳԻ ՀԱՅՏՆԻ ՄԱՐԶԻՉ ՋԵՐԻ ԹԱՐԽԱՆՅԱՆԸ

Մեկ տարվա ընթացքում Թարխանյանը նոր թիմ կառուցեց, որը մտավ առաջատարների առաջին եռյակ: 1977 թվականին Լոս Անջելես Լեյքերս ակումբի ղեկավարությունը Ջերրիին պայմանագիր առաջարկեց, սակայն մարզիչը հրաժարվեց և շարունակեց մարզել նախկին թիմը:

1992 թվականին Թարխանյանն մուտք գործեց NBA՝ պայմանագիր կնքելով Սան Անտոնիո Սփըրս թիմի հետ, որը 1995 և 1996 թվականներին դարձավ NBA չեմպիոն: 2002 թվականին 72 տարեկան հասակում Ջերին հեռացել է մեծ սպորտից:

Իր 34-ամյա մարզչական կարիերայի ընթացքում Ջերին հաղթել է 729 խաղում, որից 706-ը դիվիզիոնի մակարդակի: 2013 թվականին իր տեղն է զբաղեցրել ամերիկյան բասկետբոլի «Փառքի սրահ»-ում:

### ՏՐՏՈՒՆՋ

Օրերս անպտուղ, տխուր, ձանձրալի,
Ու գնում եմ ես ունայն տրտունջով
Իմ սիրած մարդկանց, իմ լավ հույսերի
Գերեզմանների շարքերի միջով:
Թաղել եմ նրանց: Տխուր է ճամփան:
Եվ իմ հայրենի աշխարհում օտար,
Օտար ու մենակ անցվորի նման,
Որ չունի ընկեր, ոչ տեղ ու դադար:
Օտար են շուրջդ ու չեն հասկանում
Ոմանք քո վիշտը, ոմանք քո լեզուն,
Անտարբեր գալիք երջանիկ օրին,
Չգիտեն նրա կարոտը անքուն...
Չեն՛ն մարդուկներ, լրբորեն հանգիստ
Անսիրտ, փոքրոգի, գծուծ ու կոպիտ.
Մեռնում են, մարում նրանց հայացքից
Ե՛վ հոգու ձգտում, և՛ սրտի ժպիտ:
Էլ ո՞ւմ առաջին սիրտդ բաց անես,
Ո՞ւմ համար երգես սրտալի երգեր,
Ո՞ր չքին սիրես, կյանքդ նվիրես,
Էլ ինչպե՞ս ապրես անսեր, անընկեր...
Եվ օրերս այսպես տխուր, ձանձրալի,
Ու գնում եմ ես ունայն տրտունջով
Իմ սիրած մարդկանց, իմ լավ հույսերի
Գերեզմանների շարքերի միջով:

*Հովհաննես ԹՈՒՄԱՆՅԱՆ*

Մեր օրերում շատ են գրքերը, շատ են և գրողները: Բայց դժբախտաբար նրանցից շատերը զուրկ են և գեղարվեստական արժեքից, և մտքի զգացողությունից, և ...

Այս առումով Լիլիա Մաշինյան բանաստեղծուհին իսկական երևույթ է մեր արդի պոեզիայում: Մեր օրերում, մեր կողքին ապրող բանաստեղծուհի՝ ով իր պոեզիայով մտել է մեր գրականության մեջ, սիրվել ու դարձել է մեր հոգևոր աշխարհի մասնիկը:

Լոռվա չքնաղ բնաշխարհի (Շնող գյուղ) ծնունդ է Լիլիա Մաշինյանը: Եվ Լոռին դարձել է նրա ներշնչանքի աղբյուրը: Լիլիա Մաշինյանի պոեզիան ունի Լոռվա ձորերի խորությունը, Լոռվա սարերի վեհությունը, Լոռվա երկնքի մաքրությունը: Նրա պոեզիան խոհի ու զգացմունքի, զգացողության և հույզի, հոգու և մտքի ներդաշնակություն է:

...Եվ միայն իրեն՝ բանաստեղծուհուն է հայտնի, թե ի՞նչ ցավ է կրծում իր սիրտը ամեն մի բանաստեղծություն երկնելիս, ի՞նչ վախով է նա այդ բանաստեղծությունները հանձնում ընթերցողի դատին...

Լիլիա Մաշինյանի բանաստեղծությունները գրավում են ընթերցողին իրենց պոետական հասունությամբ, ձևավորված աշխարհայացքով, ապրումների անկեղծությամբ: Նրա պոեզիան բաց խոստովանություն է, մի անսահման, չմարված կարոտ առ Հայրենիքն ու հայրենին, առ սերն ու մայրենին...

*Կարեն ՄՂԴՍՅԱՆ*

## Հրաշքի խաբկանք

Քեզ ի՞նչ պատմեմ սահմաններից իմ հոգու,
Երազներիս հայացքներից երկնաքեր,
Տառապանքի քարտեզներում իմ ու քո
Ինքս անգամ տեղս կարգին չգիտեմ,
Քեզ ի՞նչ պատմեմ սահմաններից իմ հոգու...
Որտե՞ղ եմ ես, ի՞նչ դատարկում, ի՞նչ հոծում...
Ինչ նոր օր եմ մաքրագրում, ինչ՝ ջնջում,
Երբ վրձնում եմ եկնաառաք թախիծներ,
Երբ պոեզիաս արևներից եմ փնջում,
Ու Սերը հենց գուցե սա էլ համարենք...
Հին տարին էր երազի մեջ արթմնի...
Ամանօրյա հրաշքների բարձի տակ
Այս տարին էլ դատարկ մի տուփ կդնի,
Ձյուն կնստի լուսնի վրա շարունակ,
Ու կարոտում նորից օրը կմթնի...
Ու պոեզիան գուցե սա էլ համարենք,
Երբ գիշերը թանաքագույն է դառնում,
Ու բառեր են կաթում լուսնի աչքերից,
Տառապանքով ճերմակ թղթին համրանում...
Ու Սերն էլ հենց տառապանքը անվանենք...
Երբ խենթության դաշտից պոկված մի քամի
Հպվում է մեզ անքնության մատներով,
Եվ տխրության անմխիթար մի ժամի
Սերը ծածուկ պոեզիային մատնելով՝
Թողնում ենք, որ իր աշխարհները տանի...
Հրաշքը հենց գուցե սա էլ համարենք...

## ՁՄԵՌԱՅԻՆ ԷԼԵԳԻԱ

Արթնացա: Մաքու՛ր էր օրը,
ու չկար ոչ տանջանք, ոչ թույն,
Դյութական հեքիաթ էր փռել
ցած իջնող սպիտակ մի ձյուն,
Նոր սարքած շարոցի*
նման ծառերից շիրա էր կաթում,
Ամեն ինչ ճերմակ էր այսօր,
ու սակայն... ո՞ւր էիր դու...
Եվ իջավ գիշերը հուշիկ,
սպիտա՛կ, շուշե՛, խշշա՛ն,
Լույսերը չեմ անջատում,
դեռ գուցե կգաս դու տուն,
Կբերես ձյուներից խլած սպիտակ,
իսկական շուշան,
Որ ապրի գիշերս սիրո
ձյունապա՛ր գլխապտույտ...



## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՌԱՊՍՈԴԻԱ

Չքնեցի այդ գիշեր: Վարագույրի ետևում
Լուսնալույսի ծաղրանքը
իմ աչքին էր հետևում:
Գրում էի: Ու հատ-հատ
տենդոտ-քնատ բառերում
Մշուշվում էր հուշ առ հուշ
ցնորքների իմ հեռուն:
Դրսում ձմեռն էր ծաղկել,
ցուրտն իմ ներսում էր մանում,
Փաթիլներին ես այնպես
նմա՛ն էի մանրանում...
Խաբում էի ինքս ինձ,
թե լուսնի պաղ աչքերում
Այս ձյունամաղը նորից
գարուններ է նկարում...
Մինչ նույն ցավի խազգրով
հերթական երգն էր գրվում,
Չեղած տաքից խունացած՝
կորչում հոգնած թղթերում:
Իմ քրքրված երազի
ճերմակ շորն էր Անճարում,
Ոչ մի փրկող կարկատան՝
բառի դատարկ տաճարում...
Ու ողջ գիշեր ես այսպես՝
փունջ ասեղով ինձ կարում,
Քեզ թելահան Սեր էի
նամակներում ծրարում...

## ՀԱՅՐԵՆԻՔ՝ ԿԱՐՈՏԻ ՎԱՐԴ...

Հայրենիք, հար թերթվող գիրք,
Սնանաչք կապույտի թարթ,
Ճերմակ սար, ծովխոհուն միտք
Նոյաէջ վեհ ակնթարթ:
Հեռու եմ... Լուրթ ջրերից
Ակներն են իմ բիբերում,
Քո պանդուխտ որդուն ներիր,
Գիրկ պահիր կարոտներում...
Կապուտաչ, ճերմակահոն,
Հայրենիք՝ հարավի վարդ,
Քարեղեն իմ երգեհոն,
Փիրուզակ իմ կրծքազարդ:

## Հայաստանում

Ես էլ ո՞նց գնամ էս լեռներից,
Կանաչ կարոտիս ինչպե՛ս զգվեմ,
Ի՞նչ բառեր պոկեմ էս ջրերից,
Էս տաք գույներով ի՞նչ երգ գրեմ...
Հայրենը նորից թև է առել
Աղավնի դարձած թառել սրտիս,
Ես կարոտաբաղձ հավք եմ դառել,
Երնեկի երգը առած կտցիս...

Ասացի, – Սե՛ր,
Ասիր, – չկա՛մ,
Ի՞նչն է մնում՝
Ես մնամ,
Ասացի, – Մա՛հ,
Ասիր, – կգամ,
Հենց որ օրը
Իմանամ,
Ասացի, – Ցա՛վ,
Ասիր, – ես կամ
Սիրո, Մահվան
Արանքում...,
Ասացի, – Ե՛րգ...
Ասիր, – ես եմ
Էդ ցավերը
Ամոքում...

*Լիլիա ՄԱՇԻՆՅԱՆ*

## «ՇՆԵՐԸ»

Ես գիտեմ, թե ովքեր են տերերը,
Ում ձեռքից են ուտում էս շները,
Ես գիտեմ...

Ու թեև միշտ էլ կուշտ են տերերը,
Բայց սովից կատաղած են շները,
Եվ հիմա...

Հենց էնպես չեն հաչում էս շները,
Ուշացրել են մի քիչ նրանց կերը.
Ուշացրել...

Կերակրեք, չէ որ դուք եք տերերը,
Որ հանկարծ մեզ չուտեն էս շները,
Կերակրեք...

Վայելեք ձեր համեղ պատառները,
Մնացորդը ուտեն թող շները,
Որ լռեն...

Թե չէ վախն այցելում է գիշերը,
Երբ սովից կատաղած են շները,
Զգուշացեք...

Փակեցեք շատ ամուր ձեր դռները,
Փողոցում թող մնան պոետները,
Եվ մարդիկ,
Ում համար միևնույնն են տերերը,
Եվ հատուկ կատաղացրած շները,
Միևնույն...

*Ռուբեն ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*

# ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԽՈՍՔԸ ԿՈՐՑՐԵԼ Է ԻՐ ԱՐԺԵՔՆ ՈՒ ԳԻՆԸ

## հարցազրույց Արգամ Այվազյանի հետ իր նոր և տպագիր աշխատությունների մասին



Ճարտարապետության և մշակույթի պատմաբան, արվեստաբան Արգամ Այվազյանը ծնվել է 1947 թ-ին Նախիջևանի Արինջ (այժմ Շահբուզի շրջանի Արինջ) գյուղում: Ամբողջ կյանքը զբաղվում է Նախիջևանի տարածքի պատմությունով, մշակույթով. նա իր կյանքի 50 տարին նվիրել է այդ երկրամասի բազմաթիվ հուշարձանների և սրբավայրերի ուսումնասիրությանը: Ավելի քան 200 աշխատության հեղինակ է (որոնցից 40-ը հրատարակված է առանձին գրքերով), իսկ 7-8-ը շուտով լույս կտեսնեն: Արգամ Այվազյանը նաև Նախիջևանի մասին ֆիլմի, կոնֆերանսների, քննարկումների, ցուցահանդեսների հեղինակ է: Նախիջևանի հուշարձանների պահպանման, ճանաչման, ուսումնասիրման իր արդյունավետ աշխատանքի համար Արգամ Այվազյանը պարգևատրվել է ՀՀ Ազգային գրադարանի «Հակոբ Մեղապարտ», ՀՀ վարչապետի մեդալներով: ՀՀ Նախագահի 2010 թ. մրցանակաբաշխության հումանիտար գիտությունների դափնեկիրն է:

Այս տարի հայագետ-նախիջևանագետ, ՀՀ մշակույթի վաստակավոր գործիչ Արգամ Այվազյանը ևս երկու գիրք է հրապարակել, որոնք թեև փոքրածավալ են, բայց հեղինակի գնահատմամբ՝ կարևոր: Աշխատանքներից մեկը՝ «Քյոթահիահայ հախճապակեգործության մի կարևոր հավաքածո»-ն նվիրված է Կոմիտասին:

Այս աշխատության մեջ քննարկվում է Քյոթահիայի հախճապակեգործության արվեստը, նրա դրվագները և Հունաստանում՝ Գալֆայանների մասնավոր հավաքածուում գտնվող նյութերը: Աշխատության մեջ հրապարակված են նաև 120 գունավոր լուսանկարներ:

Երկրորդ աշխատանքը՝ «Աժդանական կամ Վիշապասար» լեռանը նվիրված գրական էսսե է: Նախիջևանում գտնվող Վիշապասարի վրա 1989 թվականին հայտնաբերվել է Անդրկովկասում առայժմ ամենահին ուրարտական սեպագիրը, որը թվագրվում է Ք. ա. 820-ական թվականներով: Էսսեն համալրված է լեռան և շրջակա բնակավայրերի հայկական հուշարձանների 100-ից ավելի լուսանկարներով: Այս առիթով կայացած հարցազրույցը գրքերի հեղինակ Արգամ Այվազյանի հետ սիրով ներկայացնում ենք մեր ընթերցողին:

***– Տարիների հեռվից գնահատելով Ձեր անցած ճանապարհը, ինչպե՞ս կներկայացնեք այսօրը. որտեղից ուր եք հասել:***

– Այդ ճանապարհը սկսվում է դեռևս իմ դպրոցական տարիներից՝ 1961 թվականից, երբ 6-7-րդ դասարանից թղթակցում էի Բաքվի հայերեն «Կոմունիստ» թերթին, Ադրբեջանի ռադիոյի հայկական ռադիոհաղորդումներին: Հետաքրքրություններս դպրոցական տարիներում ակնհայտորեն դեպի ժուռնալիստիկան էր: 1964 թ. դպրոցն ավարտելուց հետո, ինձանից անկախ, 1965 թվականից սկսեցի զբաղվել նախիջևանյան հարցերով: Տարիների ընթացքում այդ շրջանակն ընդլայնվեց և ընդգրկեց ողջ նախիջևանյան հայագիտական գրեթե բոլոր բնագավառները՝ պատմություն, արվեստ, մշակույթ, ճարտարապետություն, ազգագրություն, լեզվաբանություն, քանդակ և այլն: Անցած տասնամյակներում, անշուշտ, Ադրբեջանի և Նախիջևանի իշխանությունների կողմից ենթարկվել եմ նաև մի շարք պատժամիջոցների ու արգելքների: Սակայն, հավանաբար, Աստծո օգնությամբ, այդ ամենը ի դերևս է եղել ու հաղթահարվել:

Մի հանգամանք էլ նշեմ, որ անցած ճանապարհին ինձ՝ բազմաթիվ խոչընդոտների հաղթահարմամբ, հաջողվել է փաստագրել նախիջևանյան հայկական մեզ հասած գրեթե ողջ նյութական ժառանգությունը: Այդ ուղղությամբ հաջողվել է նաև հրատարակել 200-ից ավելի աշխատություններ, որոնցից 40-ը առանձին գրքերով: Կատարվածը, առանց վարանելու, հսկայական աշխատանք է, որը հայագիտությունն առհասարակ հարստացրել է բազահազար նորահայտ նյութերով: Եթե այս հարցի պատասխանն այսպիսի համառությամբ ավարտեմ, ապա պետք է նշեմ, որ, ըստ հայ և օտար գիտական, պետական, քաղաքական բազմաթիվ գործիչների բազմիցս նշած գնահատականների՝ իմ հրատարակությունների շնորհիվ հայագիտության մեջ սկզբնավորվել է նախիջևանագիտություն և այդ առումով Նախիջևանը, որի համար էլ այն այսօր որոշ բացառություններով, գիտության մեջ լավ հետազոտված տարածք է:

***– Ինչի՞ վրա է բևեռացված մեր հասարակությունը, ի՞նչ որակ է ձևավորում արվեստը:***

– Պետք է ընդգծեմ որ, ցավոք, վերջին տասնամյակներում մեր հասարակության ուշադրությունը մեծամասամբ բևեռված է նյութապաշտությանը: Մնացածը՝ որպես ածանցյալ, ի ցավ սրտի, ծառայում է հենց այդ նյութապաշտությանը: Ազգայինը, պետականության ամրապնդման ազնվաբարոյությունն աստիճանաբար նահանջ են ապրում: Ինչ վերաբերվում է արվեստի ձևավորմանը և նրա առաջնակարգային դերին, ապա այն ևս ձևավորվում է երկրորդական և օտար հոսանքների ազդեցությամբ: Մենք դեռևս հեռու ենք մեր ազգային արվեստն ու մշակույթը հնարավորինս անաղարտությամբ ձևավորելու ժամանակակից իրականության մեջ: Տաղանդավոր ու առաջնակարգային արվեստ անշուշտ կա, սակայն, իմ կարծիքով, դրանք դեռևս կամ անտեսված են կամ էլ այնքան բանի տեղ չեն դրվում:

Ցավոք, այսօրվա Հայաստանի Հանրապետությունում առկա է մի քանի Հայաստան հասկացություն: Դա օլիգարխիկան դասի Հայաստանն է, որտեղ մի քանի տարում կարելի է ոչ միայն ազահաբար հարստանալ, այլ գերհարստանալ: Երկրորդ Հայաստանն աղքատ դասի Հայաստանն է, որի ներկայացուցիչները մի կերպ՝ կիսասոված կամ սոված մթնեցնում-լուսացնում են իրենց օրն ու գիշերը: Երրորդ Հայաստանն իրական հայրենասերների ու նվիրյալների Հայաստանն է, որի ներկայացուցիչներն անընդհատ պայքարում են երկրում արդարություն հաստատելու, արժանապատիվ պետության ամրապնդման համար: Չորրորդ Հայաստանն արտագաղթողների ու զբոսաշրջիկներ դարձած հայաստանաբնիկների Հայաստանն է: Եվ այս շարքը, ցավոք, կարելի է շարունակել:

***– Ի՞նչն է Ձեզ առավել անհանգստացնում մեր երկրում:***

– Շատ բան: Սակայն ամենանազլխավոր մտահոգությունս այն է, որ մեր երկրում իր արժեքն ու գինը կորցրել է խոսքը, օրենքների չգործելու հանգամանքները: Առավել ևս անհանգստացնող է հավատի կորուստը: Այնպես որ նշածներս ցանկացած մարդու և պետության համար հիմնասյուներ են, որոնք, ցավոք, մեր օրերում խարխլվել են:

***– Դուք էլ, շատ շնորհաշատ մտավորականների նման անցաք մութ ու ցուրտ տարիների միջով. ի՞նչ կարծիքի եք այն ժամանակների ու ներկայիս գրականության մասին:***

– Մեր ժողովուրդն, անշուշտ 1988-95թթ. շատ բանի դիմացավ և շատ ու շատ դժվարություններ հաղթահարեց: Կարծում եմ, որ այդ տարիներին ժողովուրդը շատ լավ գիտակցում էր մեզ բաժին ընկած ճակատագրական փորձությունները՝ երկրաշարժի, սոցիալիստական կացութաձևի փոփոխման ու Արցախին պարտադրված պատերազմի դժվարությունները: Այդ տարիներին ժողովուրդը բարձր գիտակցությամբ տոկաց և արժանապատվորեն դիմացավ ու դիմադրեց:

Իմ կարծիքով ինչպես այդ դժվարին տարիներին, այնպես էլ մեր օրերում հայ գրականությունը դեռևս չի տվել մեծածավալ՝ այն ժամանակների շունչն ու ոգին պատկերող ու վերհանող ստեղծագործություններ: Այդ ուղղությամբ վերջին տարիներին հրատարակված որոշ գրական ստեղծագործություններ, իմ կարծիքով, դեռևս չեն լրացնում այդ բացը:

***– Արդյո՞ք գրքերը նոր էջ կբացեն մեր նորագույն պատմության մեջ՝ ծառայելով որպես ձեռնարկ պատմաբանների և հասարակության համար:***

– Ըստ կարգի, այո՛: Գրքերը՝ լինեն գրական

Ͻ29

28Շ

ստեղծագործություններ, թե գիտա-պատմական աշխատություններ, պետք է որ ժամանակի ընթացքում դառնան ուսումնագիտական ձեռնարկներ: Սակայն մեր իրականության մեջ այդ պրոցեսները շատ դանդաղ են զարգանում և գրականության ու գիտության նվաճումները կամ տեղ չեն գտնում կամ էլ շատ ուշացումներով են արժանանում պետական ու ազգային գնահատականների: Այսօր, ցավոք, մեր պետական ոչ ճիշտ քաղաքականության պատճառով հայ մարդը պարզապես կտրված է գիր ու գրականությունից, մամուլից: Անտեղյակ է նոր լույս տեսած գրքերից: Բավական է ընդգծել, որ այսօր Հայաստանում գրքերը լույս են տեսնում 300–500 տպաքանակներով, մամուլը՝ 1000–5000 օրինակներով: Ընդ որում՝ դրանք էլ գրեթե հիմնականում տարածվում են Երևանում: Բավական է փաստել այն հանգամանքը, որ վերջին 20 տարում Երևանում փակվեցին շուրջ 60 գրախանութներ: Այժմյան երևանյան գործող 10-12 գրախանութներն էլ իրենց տարածքներով ուղղակի գրքերի պահեստների տպավորություն են թողնում: Գյուղական վայրերում էլ փակվել են բազմաթիվ գրադարաններ: Մնացածներն էլ ավելի քան 20 տարի է ինչ չեն համալրվում նոր լույս տեսած գրականությամբ: Սա, մեղմ ասած, պետական հանցագործություն է ապագայի և ապագա սերունդների հանդեպ:

***– Ինչպիսի՞ն եք տեսնում մեր երկրի ապագան:***

– Ցավոք, այն այնքան էլ վարդագույն չեմ տեսնում: Այնպես որ, եթե իշխանությունները չիրագործեն ազգային և արմատական ծրագրեր, ապա առաջիկա տարիներին արտագաղթը ևս կշարունակվի ու երկրի բնակչության թիվը կնվազի մինչև 1,5 միլիոնի: Եվ երկիրը կիսազարգացած վիճակով հիմնականում կվերածվի սպասարկող, ծառայություններ մատուցող երկրի: Հայ մարդը, առավել ևս տաղանդավոր և հանճարեղ մարդը իր ունակությունները մեծամասամբ, ի ցավ սրտի, կշարունակի ներդնել այլ երկրներում:

***– Ինչպե՞ս են ծնվում Ձեր գրքերը. խնդրում եմ նաև ներկայացրեք Քյոթահիայի հախճապակու և Նախիջևանի Վիշապաքարի գրքերը:***

– Նկատենք, որ յուրաքանչյուր ստեղծագործող, գիտնական յուրովի է ստեղծագործում: Իմ աշխատությունները՝ լինի դա հոդված թե գիրք, ծնվում են մեկեն, որին նախորդում է իմ մեջ եփվելու-թրծվելու պրոցեսը: Եվ դրանց «ծնունդը» սովորաբար տևել է մեկ շաբաթից մինչև 3 կամ 4 ամիս: Այդպես են ստեղծվել իմ գրեթե բոլոր աշխատությունները: Այդպես ստեղծվեցին նաև 2014 թ. տպագրված իմ «Աժդահական կամ Վիշապաքար» էսսեն ու «Քյոթահիայի հախճապակեգործության մի կարևոր հավաքածո» գրքերը: Այդ աշխատանքներից առաջինում ներկայացված է Նախիջևանի տարածքի գրեթե կենտրոնական մասում հիասքանչորեն վեր խոյացող գեղեցկատես Նախիջևանյան Մասիսը՝ Վիշապաքարը, որի կողին 1989 թ. հայտնաբերվեց Ք. ա. 820-ական թվականներով թվագրվող ուրարտական կարևոր սեպագիր: Էսսեում ներկայացված են նաև այդ լեռան հետ կապված ավանդությունները և պատմական անցուդարձերը, հիշյալ սեպագիրը, որն, իմիջիայլոց, Անդրկովկասում հայտնաբերված սեպագրերի թվում ամենահնագույնն է: Երկրորդ աշխատանքում, որը նվիրված է մեծն Կոմիտասին, ով արմատներով սերում է Նախիջևանի նշանավոր Ցղնա ավանից, քննարկված են առհասարակ Քյոթահիայի հայոց հախճապակեգործության արվեստը, նրա ուսումնասիրության պատմությունը, ինչպես և Հունաստանում գտնվող Գալֆայանների հավաքածուի մաս կազմող Քյոթահիայի հախճապակյա շուրջ 100-ի հասնող հավաքածուի իրերը: Երկու աշխատանքներում էլ գունավոր տպագրությամբ հրատարակվել են 100-120 լուսանկարներ:




***– Կընդլայնվե՞ն արդյոք հետագայում ձեր փաստա-վավերագրական աշխատությունները:***

– Դա, բնականաբար, կախված է ժամանակից, հնարավորություններից, ֆինանսների առկայությունից: Ցանկություններս, իհարկե շատ մեծ է: Թե ինչն ինչպիսի ընթացք կունենա, այժմ դժվարանում եմ ասել: Անցյալ տասնամյակներում, օրինակ, իմ հոդվածները վերածվեցին այնպիսի գրքերի, ինչպիսին են Ագուլիսն, Ջուղային նվիրված Նախիջևանի վիմագրական ժառանգության 6 հատորյակի 1-ին և 2-րդ հատորները, քանդակագործության, որմնանկարչության, ազգագրության, հուշարձաններին և այլ բնագավառներին նվիրված հատորյակները: Այնպես որ ապավինենք Աստծուն և հաջողությանը:

***– 2015 թվականի ապրիլի 24-ին լրանում է Հայոց Ցեղասպանության 100-ամյա տարելիցը: Այս առիթով ձեր խոսքը հայ ժողովրդին:***

– Չեմ կարծում եմ, որ 2015 թ. ինչ որ կարևոր հեղաշրջում է լինելու Հայոց Մեծ Եղեռնի ճանաչման գործում: Ակնկալիքներս այդ ուղղությամբ շատ քիչ են: Չեմ բացառում, որ այդ տարում ևս որոշ պետություններ կճանաչեն ցեղասպանությունը, սակայն Թուրքիան կմնա անդրդվելի: Այնպես որ մեզ թե՛ պետականորեն և թե՛ համազգային ջանքեր են պետք այդ ուղղությամբ թե՛ 2015 թ. և թե՛ դրանից հետո հետևողական աշխատանքներ կատարելու համար:

***– Ի՞նչ հորդորով կդիմեիք մեր ժամանակի երիտասարդությանը:***

– Ապագան միշտ էլ երիտասարդությանն է: Այնպես որ ապագայի համար պայքարողների ու մտահոգվողների շարքերում միշտ էլ պետք է երիտասարդները լինեն:

Կցանկանայի, որ մեր երիտասարդությունը չենթարկվեր ժամանակի քաղաքական զանազան հոսանքներին, կեղծ հայրենասիրության կոչերին ու խաբուսիկ շարժումներին, ինչին այսօր, ցավոք, հաճախ ականատես ենք լինում: Այս երկրի թե՛ տերը և թե՛ նրա ապագայի կերտողը հենց երիտասարդությունն է: Այնպես որ այս իրավունքներից ու պարտականություններից երիտասարդությունը երբեք չպետք է հրաժարվի կամ էլ կրավորական դիրքորոշում ունենա:

Ցանկությունս և մտահոգությունս նաև այն է, որ նոր՝ 2015 թ. և հետագա տարիներին մենք ազգովին գիտակցենք այն պարզ ճշմարտությունը, որ մեր երկրի ու ժողովրդի, պետականության զարգացման ճակատագիրը նախևառաջ մեր ձեռքերում է և ամեն ինչ պետք է անել այն արժանավայել ամրապնդելու համար: Հաջողությունների բարեմաղթանքներս բոլորին...

***Գարիկ ԱՎԵՏԻՍՅԱՆ***

# «ԼՔՎԱԾ ԳՈՒՅՔԻ» ՅՈՒՐԱՑՈՒՄ

Հայտնի է, որ օսմանյան կառավարությունը հայերի ցեղասպանությունն իրականացնելու համար կազմակերպել էր հատուկ նշանակության ջոկատներ, որոնք հայտնի էին «Թեշքիլաթը մահսուսե» («Հատուկ կազմակերպություն») անունով: Դրանք զբաղված էին ոչ միայն հայերի տեղահանության ու խաղաղ բնակչության բնաջնջման գործով, այլեւ նրանց շարժական ու անշարժ գույքի բռնագրավմամբ: Առաջին աշխարհամարտում Օսմանյան կայսրության պարտությունից հետո Թուրքիայում ստեղծվեցին 33 հանձնաժողովներ, որոնք լծվեցին «լքված գույքի» հաշվառման, գրանցման ու իրացման գործին: Այդ աշխատանքներն իրականացնում էին «Թեշքիլաթը մահսուսե»-ի անդամներից բաղկացած հանձնաժողովները: 1922-ին Թուրքիայում ընդունվեց «Լքված գույքի մասին» առաջին օրենքը: Մինչեւ 1988 թ. թուրքական կառավարությունը հետեւողականորեն իրականացրեց հայերի, հույների ու ասորիների անշարժ գույքի յուրացման քաղաքականություն:

# ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹՅԱՆ ԻՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐԸ. ՄԱՍՈՆՆԵՐԻ, ՍԻՈՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԵՐԻՏԹՈՒՐՔԵՐԻ ԳԱՂՏՆԻ ԿԱՊԵՐԸ

2008-ի ապրիլի 24-ին Երևանում էին «Գրանդ Օրիենթ» («Մեծ Արևելք») մասոնական օթյակի Ֆրանսիայի կենտրոնակայանի բարձրաստիճան ներկայացուցիչներ, ինչպես նաև իրավաբանական հարցերով պատասխանատու, նախկինում «Մեծ Արևելք» ուխտի խորհրդական Գի Հակոբյանը: Նրանց հետ հարցազրույցից զարմանքով տեղեկացանք, որ մասոնները սիոնիզմի հետ որևէ կապ չունեն, և որ «Մեծ Արևելք» օթյակի անդամները քաղաքականությամբ չեն զբաղվում: Մի՞թե... Հայոց ցեղասպանությունն իրագործած բազմաթիվ երիտթուրքեր հենց նույն «Մեծ Արևելքի» անդամ էին:

Արևմտյան հայտնի հետազոտող, «Անգլիայի պատմություն» և բազմաթիվ այլ ուսումնասիրությունների հեղինակ Ջասպեր Ռիդլին իր «Ազատ որմնադիրները (ֆրիմասոնները). աշխարհի ամենահզոր գաղտնի կազմակերպության պատմություն» (Նյու Յորք, 2001) մեծածավալ աշխատության մեջ (էջ 216-218) հայտնում է Թալեաթի՝ Թուրքիայի «Մեծ Արևելք» օթյակի (երկրի գլխավոր օթյակի) Մեծ Վարպետը, այսինքն՝ ղեկավարը լինելու մասին, ինչը նշանակում է, որ նա 33-րդ աստիճանի մասոն է եղել: Թալեաթը նշված օթյակի Մեծ վարպետ է դարձել 1909 թ.: «Երիտթուրքերից շատերը մասոններ էին, բայց ոչ նրանց առաջադեմ հայացքները Թուրքիայի արդիականացման մասին, ոչ էլ մասոնական սկզբունքները չկանխեցին Հայաստանում ցեղասպանության ծրագրին նրանց աջակցությունը», – իր հիշյալ աշխատության մեջ գրել է Ջասպեր Ռիդլին:

Անդրադառնալով Թալեաթ բեյին, որը հետագայում ստացել է Մեհմեդ Թալեաթ փաշա անունը՝ նշենք, որ նա երկրի երիտթուրք գլխավոր ղեկավարներից է եղել, ունեցել է հրեական ու գնչուական ծագում: Հեռագրակապի՝ ամիսը 3 լիրա աշխատավարձով այս ծառայողը հետագայում դարձել է Օսմանյան կայսրության ներքին գործերի նախարար, 1917 – 1918 թթ.՝ Մեծ վեզիր (վարչապետ): Հայոց մեծ եղեռնի հիմնական ծրագրողներից և իրականացնողներից այս մեկը հայտնի է նաև որպես Սալոնիկի «Վերթիաս» օթյակի անդամ («Դեոնմեե հրեաները, նրանց ծագումը և դերը հայկական ցեղասպանության մեջ», «Զարթոնք» օրաթերթ, 16.04.1986 թ., թիվ 155):

Ի դեպ, պատմությունից հայտնի է, որ երիտթուրքերի, այսինքն՝«Իթթիհադ վե Թերաքքը» («Միություն և առաջադիմություն») կուսակցության (հայտնի է նաև որպես կոմիտե) անդամների գործածած «Ազատություն, հավասարություն և եղբայրություն» բառերը նաև ֆրանսիական մասոնության նշանախոսքերն են, որոնք Ֆրանսիական Մեծ հեղափոխության հաղթանակից հետո վերածվել են Ֆրանսիայի Հանրապետության պաշտոնական նշանախոսքի: Դրանք այսօր էլ զարդարում են Ֆրանսիայի խորհրդանիշները:

Սփյուռքահայ հայտնի հրապարակախոս, փաստաբան և հասարակական գործիչ Գասպար Տեր-Տերյանն իր «Սիոնիզմի և պանթուրքիզմի առնչութիւնները և անոնց սպառնալիքները Հայաստանի լինելութեան» աշխատության (Բեյրութ, 1990 թ.) մեջ Հայոց ցեղասպանության ոճրագործների՝ երիտթուրքերի շարժման («Միություն և առաջադիմություն» կուսակցության) պարագլուխներ Էնվեր և Թալեաթ փաշաների, Ջավիդ բեյի և Ջեմալ փաշայի առնչությամբ նշել է, որ նրանցից առաջին երեքը հրեա-սիոնիստներ էին:

Մասնագետներին, մասամբ նաև լայն հանրությանը հայտնի է Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի նախարար սըր Չ. Հարդինգին:

Ստամբուլում Մեծ Բրիտանիայի դեսպան սըր Դ. Լոութերի ուղարկած 29.05.1910 թ. նամակ-զեկուցագիրը (Մեծ Բրիտանիայի Ֆորեյն օֆիսի դիվան, Լոութերի թղթեր, թիվ F.0.800/193 A փաստաթուղթն առաջին անգամ լույս է տեսել Լոնդոնում հրատարակվող «Միջինարևելյան ուսումնասիրություններ» (Journal of Middle Eastem Studies) ամսագրի 1971 թ. թիվ 1-ում՝ իբրև հավելված նույն համարում հրապարակված Է. Կեդուրիեի «Երիտթուրքերը, մասոնները և հրեաները» հոդվածը): Դրանում



նշված է, որ սալոնիկյան (երիտթուրքական) շարժման աղբյուրը հրեաներն են: Մեծ Բրիտանիայի արտգործնախարարին ուղարկած իր նամակ-զեկուցագրում սըր Դ. Լոութերը Թալեաթին և Ջավիդ բեյին ներկայացրել է որպես «Իթթիհադ վե Թերաքքը» կոմիտեի գաղտնի ուժերի պաշտոնական ներկայացուցիչներ և «Ֆրանկմասոնության գագաթնակետերը Թուրքիայում»:

Պատմությունից հայտնի է, որ Ջավիդ բեյը երիտթուրքերի պարագլուխներից էր, գործուն մասնակցություն է ունեցել Հայոց մեծ եղեռնի ծրագրմանը և իրականացմանը, իսկ հետագայում հատկապես ֆինանսապես աջակցել Մուստաֆա Քեմալի շարժմանը: «Այն բանից հետո, երբ Թալեաթ բեյը ներքին գործերի նախարար դարձավ մոտ մեկ տարի առաջ, պատասխանատու պաշտոնների սկսեցին նշանակվել միայն մասոններ կամ կոմիտեի հետ կապված մարդիկ, իսկ, ամենից հաճախ, այս երկու որակները իրենց մեջ համատեղող դեմքեր, – գրել է Ստամբուլում Մեծ Բրիտանիայի դեսպանը, – այսպիսով մասոնական կոմիտեի ցանցը տարածվեց ողջ կայսրությունով»:

Վերը նշված և այլ փաստերի հիման վրա սըր Դ. Լոութերը եզրակացրել է, որ «Թուրքիայի քողածածկված կառավարությունը «Մեծ Արևելքն» է՝ Մեծ Վարպետ Թալեաթ բեյի գլխավորությամբ»: Իր նամակ-զեկուցագրում դեսպանն ուշագրավ տեղեկություններ է հաղորդել նաև Սաիդ Հալիմի մասին՝ նշելով, որ նա ֆինանսապես աջակցել է «Միություն և առաջադիմություն» կոմիտեին և անձամբ մասնակցել նրա աշխատանքներին: Ս. Հալիմը 1913-1916 թթ.. եղել է Օսմանյան կայսրության Մեծ վեզիրը (վարչապետը), Մեծ եղեռնը ծրագրողներից էր: Սըր Դ. Լոութերը նշում է նաև, որ «երիտթուրքերը կապ հաստատեցին միայն օսմանցի և արտասահմանցի հրեաների հետ: Նրանց օտարումը մյուս ժողովուրդներից ակնհայտ դարձավ», իսկ քիչ հետո հավելում է. «Երևում է, որ հրեան, իր տնտեսական բարձր գիտակցությամբ, թուրքին ծուղակը գցեց»:

Նույն փաստաթղթում դեսպանը հայտնում է նաև իրեն հասած այն տեղեկությունը, թե Սալոնիկի կոմիտեի ազդեցիկ գործիչներից մեկը՝ դոկտոր Նազըմը, հրեական ծագում ունի: Համենայնդեպս, անժխտելի փաստ է, որ դոկտոր Նազըմը Մեծ եղեռնի հիմնական ծրագրողներից և իրագործողներից մեկն է եղել, ղեկավարել է այդ ահավոր ոճրագործությունն իրագործելու կոչված «Թեշքիլաթը մախսուսե» («Հատուկ կազմավորումներ») կառույցը:

Նկատի ունենալով երիտթուրքերին՝ բրիտանացի դիվանագետը գրել է. «Մայրաքաղաքն ու խորհրդարանը նրանք իրենց ձեռքում պահում են ռազմական օրենքով: Հայերին հանգստացրին Ադանայի կոտորածով, հույներին ստիպեցին լռել ահաբեկչության միջոցով, բուլղարական քաղաքական կյանքին վերջ դրեցին՝ նրանց ծառայություններն ու ընկերությունները փակելով: Այդ բոլորն արվեց «անսանձ» քրիստոնյաների դեմ: Հիմա թուրքական բանակը հանգստացնում է ըմբոստ ալբանացի մահմեդականներին, և, ըստ երևույթին, նույնը սպասում է նաև

Է31

30➲

քրդերին ու արաբներին: Քանի որ թուրք տարրը չի փայլում իմացական և գործարար որակներով, բնազդը նրանց ստիպում է ցույց տալ իրենց գերակայությունը ռազմական ուժով: Սակայն այս ամենը կախված է եվրոպացի, հիմնականում հրեա ֆինանսավորողներից, որոնք նրանց հատկացնում են բանակը պահելու համար անհրաժեշտ գումարները, ինչը դեմ է տնտեսական զարգացման փաստացի իրադրությանը»:

«Սիոնիստների հետ երիտթուրքերի հակահայկական համագործակցության մասին գրում է Թեհրանի համալսարանի պատմության պրոֆեսոր Իսմայիլ Ռաhիինը, – իր «Երիտթուրքերը պատմության դատաստանի առաջ» երկհատորյակի առաջին գրքում, (Եր., 1982) անդրադառնալով երիտթուրքերի և սիոնիստների կապերին (էջ 228-249), տեղեկացրել է հայ ականավոր պատմաբան և քաղաքագետ Ջոն Կիրակոսյանը: – Հայերի կոտորածի մեղավորներ ճանաչելով երիտթուրքերին և գերմանացիներին, թուրքական նացիոնալիզմն ու պանթուրքիզմը՝ պարսիկ պատմաբանն ընթերցողի ուշադրությունն է հրավիրում օսմանյան կայսրության ազդեցիկ հրեա դեմքերի բացասական դերի վրա: Նա հիշատակում է մի ֆրանսիացու «Le Dernier bal» («Վերջին բալը») գրքի 1-36 և 46-86 էջերը, որտեղ փաստեր և ապացույցներ են արձանագրված միջազգային սիոնիզմի հակահայկական գործողությունների մասին: Մասնավորապես հիշատակվում է 1914-ի հունիսի 23-ին Ստամբուլի Նուրի Օսման ակումբում կայացած Իթթիհադ կուսակցության ակտիվիստների և սիոնիստների համատեղ գաղտնի ժողովը: Նրան մասնակցել էր մոտ 700 մարդ, այդ թվում՝ Թալեաթը, Բաղրին, Սեդը, Ֆեքրին, Խիավին և ուրիշներ: Հրեաներից աչքի ընկնող դեր էին խաղացել Սամուել էֆենդին, Աբրահամ էֆենդին և ուրիշներ»:

Գաղտնի ժողովում, որին մասնակցել են նաև մի շարք պանիսլամիստներ, հայերին մեղադրել են ռուսասիրության մեջ, որոշել բոյկոտ հայտարարել ինչպես հայերին, այնպես էլ հույներին: Ի դեպ, ժողովում գլխավոր ճառախոսը Թալեաթն է եղել: Եղեռնից վերապրածների ժառանգներս գիտենք, թե Ստամպոլի զավակների այդ բոյկոտն ինչպես իրականացվեց և ինչ նշանակեց:

«Մի քանի տարի առաջ սալոնիկցի հրեա մասոն Էմմանուել Կարասոն, որը հիմա Օսմանյան մեջլիսում քաղաքի պատգամավորն է, Սալոնիկում հիմնեց իտալական ֆրանկմասոնության հետ կապված «Մակեդոնիա Ռիզորտա» օթյակը, – նշված է դեսպանի հիշյալ զեկուցագրում: – Միանգամայն ակնհայտ էր, որ այս մարդը աշխատանք էր տանում երիտթուրքերի ռազմական ու քաղաքական գործիչներին մասոնությանը հաղորդակից դարձնելու համար, որպեսզի Թուրքիայի նոր ղեկավարության շրջանում տարածվի Արևելքի հրեական գաղտնի գործունեության ազդեցությունը»:

Այնքան մեծ է եղել հրեա մասոնների դերն ու ազդեցությունը երիտթուրքական «Իթթիհադ վե թերաքքը» կազմակերպության ծննդի ու գործունեության մեջ, որ Կ. Պոլսի բրիտանական դեսպանության գլխավոր թարգման Հ. Ֆիտցմորիսը նրան անվանել է «Միություն և առաջադիմություն» հրեական կոմիտե» (Ֆորեյն օֆիսի դիվան, Լոութըրի թղթեր, փաստաթուղթ թիվ F.0.800/193 B): Սըր Դ. Լոութըրն իր հիշյալ նամակ-զեկուցագրում հավաստում է, որ «Միություն և առաջադիմություն» կազմակերպության ղեկավարներից շատերը ֆրանկմասոն են: Նշել է նաև, որ Էմմանուել Կարասոն մեծ դեր է ունեցել, մասնավորապես՝ հասել է նրան, որ իր ձեռքն է անցկացրել այդ կազմակերպության Բալկանյան կոմիտեն: «Տեղացի և արտասահմանցի հրեաներն սկսեցին նոր վարչակարգին արդյունավետ օգնություն ցույց տալ, – նկատի ունենալով երիտթուրքերի հեղափոխությունից և սուլթան Աբդուլ Համիդ Բ-ի տապալումից հետո ձևավորված վարչակարգը՝ գրել է Ստամբուլում Մեծ Բրիտանիայի դեսպանը: – Դա շարունակվեց այնքան ժամանակ, քանի դեռ, ինչպես մի թուրք բացատրեց, ժողովուրդը չսկսեց խոսել, թե ամեն մի հրեայի կարելի է գաղտնի կոմիտեի լրտես համարել, և թե ամբողջ շարժումը ոչ այնքան թուրքական, որքան հրեական հեղափոխություն էր: Իտալիայի կառավարությունը որպես գլխավոր հյուպատոս Սալոնիկ ուղարկեց հրեա մասոն Պրիմո Լևիին, որը մինչ այդ արտաքին ներկայացուցչության փորձ չուներ: Ամերիկայի դեսպան նշանակվեց Օսկար Շտրաուսը, որը Ջեյկըբ Շիֆֆի հետ ամերիկացի հրեաների վրա մեծ ներգործություն ունեցավ հրեաների Միջագետք արտագաղթի հարցում: Դա սիոնականության զարգացած հոսանքներից էր, որը հանդես էր գալիս «ուրիշ հայրենիքի» ծրագրի դեմ»: 1909 թ. վերջերին, դեսպանի տեղեկացմամբ, «Սալոնիկի պատգամավոր, հաջողակ և խելոք դեոնմե հրեա ու մասոն Ջավիդ բեյը ֆինանսների նախարար նշանակվեց»: Դեոնմե են կոչվում արտաքուստ, ձևականորեն կրոնափոխ եղած (իսլամացած) այն բոլոր հրեաները, որոնք պատկանում են հրեա «մարգարե» Սեպթայի կրոնական ուղղությանը (սեպթայիզմ): Երիտթուրքերի հեղափոխությունից հետո երկրում 2 տարի ժամկետով ռազմական դրություն է հայտարարվել: Սըր Դ. Լոութըրի հավաստմամբ, «Ռազմական դատարանի շատ սպաներ ֆրանկմասոն էին»: Յանկացած թերթի տպագրությունն արգելելու և խմբագրին կամ սեփականատիրոջը ռազմական դատարան կանչելու իրավասություն ունեցող մամուլի գրասենյակի ղեկավարի պաշտոնում, դարձյալ ըստ նույն նամակ-զեկուցագրի, «առաջ քաշվեց ևս մեկ դեոնմե հրեա մասոն Սալոնիկից»: Հիշյալ փաստաթղթում սըր Դ. Լոութըրը տեղեկացրել է նաև. «Կիսապաշտոնական օսմանյան հեռագրային ծառայությունը, որն արտահայտում էր Կոմիտեի կարծիքը օսմանների ներքին և արտաքին գործերի վերաբերյալ, գործողության մեջ դրվեց բաղդադցի մի հրեայի ղեկավարությամբ: Միևնույն ժամանակ, ոստիկանության հին նախարարության փոխարեն ստեղծվեց Հասարակական անվտանգության կազմակերպությունը՝ սալոնիկցի մի հրեայի ղեկավարությամբ, որը միաժամանակ հսկում էր թե՛ ոստիկանությունը և թե՛ ժանդարմերիային»: Առանձնապես կարևոր է Մեծ Բրիտանիայի դեսպանի հաղորդած այն տեղեկությունը նաև, որ բանակում «Իթթիհադ վե թերաքքը» կոմիտեի ազդեցությունը տարածելու համար սպաներին ընդունում էին մասոնության մեջ՝ նրանց «Ռենզե» օթյակի անդամ դարձնելով:

«Կոմիտեի՝ պատգամավորների և ծերակուտականների մեծամասնությունը մասոն է դարձել և ընդունվել «Սահմանադրություն» («Լա Կոնստիտուսիոն» կամ «Կանունի Էսասի») օթյակի մեջ, – իր հիշյալ զեկուցագրում գրել է դեսպանը: – Նրանցից առաջիններից էին ներքին գործերի նախարար Թալեաթ բեյը և ֆինանսների նախարար Ջավիդ բեյը: Ընդդիմության պատգամավորներից մի քանիսը, հատկապես արաբները, տեսնելով, որ մի կողմ են մնում քաղաքական գաղտնիքներից և վարչական ղեկից, նույնպես սկսեցին միանալ օթյակներին կամ նորերը ստեղծել, ինչպես, օրինակ, «Օսմանյան եղբայրություն» («Ուխուվվետի օսմանիե») և «Ազատության բարեկամներ» («Մուհիբանի հյուրրիեթ»): Վերոհիշյալ օթյակներին որպես լրացում՝ 1909 – 1910 թթ.. ստեղծվեցին հետևյալ օթյակները. «Արևելքի հավատարմություն», «Անկեղծ բարեկամներ», «Միություն և առաջադիմություն», «Բիզանցիո Ռիզորտո», «Լա Վերիտե» (ֆրանսերեն՝ ճշմարտություն.– Ա. Հ.), «Լա Պատրի» (ֆրանսերեն՝ հայրենիք.– Ա. Հ.), «Լա Ռընեսանս» (ֆրանսերեն՝ վերածնունդ. – Ա. Հ.) և Եգիպտոսի ընդհատակյա քաղաքական հետաքննիչների համար բավական հայտնի «Լուսաբացը», որը «Մակեդոնիա Ռիզորտայի» մի բաժին է: Այս ամբողջ մասոնական ցանցը, սալոնիկյանի և մակեդոնականի նման, հրեաների ձեռքում է, որոնք կա՛մ անմիջականորեն են ղեկավարում բոլոր օթյակները, կա՛մ ուղղորդում են դրանց գործունեությունը»:

***Արթուր ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ***

Հունարենը մեղմ է, հռոմեական լեզուն՝ հզոր, հոնարենը՝ ահաբեկող, ասորերենը՝ աղերսական, պարսկերենը՝ պերճ, ալաներենը՝ զեղեցկազարդ, գոթերենը՝ հեգնական, եգիպտերենը՝ տափակախոս ու խավարաձայն, հնդկերենը՝ ճռվողական, հայերենը՝ քաղցր, որը միաժամանակ կարող է մյուս բոլոր լեզուների հատկություններն ամփոփել իր մեջ:

***ԵՂԻՇԵ***

Հայոց լեզու, դու մեր անկողոպտելու գանձը եղար, մեր անընկճելի հայրենիքը: Մեր ժողովուրդը կորցրեց գահ և թագ, զորք և իշխանություն, ավեր եղան և ավար մեր բերդերն ու քաղաքները, ավար եղան մեր ինչքն ու գույքը, բայց դու մնացիր միայն կանգուն, մնացիր հաղթական: Յնցոտի հագավ մեր ժողովուրդը, բայց դու ծիրանով ծածկեցիր նրա հոգին, թշնամին ջաղջախեց նրա սրունքը, դու թևեր տվիր նրան՝ ժողովրդին:

***Միքայել ՆԱԼԲԱՆԴՅԱՆ***

# 24 апреля – День памяти жертв Геноцида в Армении



В 1915 году Османская Турция начала массовые уничтожения армян, которые продолжались несколько лет. Геноцид армян был организован турецкими правителями при поддержке императорской Германии и при попустительстве западных стран.

Исповедуя идеи регрессивного пантюркизма и панисламизма, турецкие власти стремились не только сохранить Османскую империю и насильно уничтожить или ассимилировать подданное население, но и создать всетуранскую империю, в которую бы вошли все мусульмане.

В 1894-1896 годах в Турции было организовано уничтожение более чем 300 тысяч армян. В 1909 году в Адане и его окрестностях было убито 30 тысяч армян.

24 апреля 1915 года была арестована первая группа армянской интеллигенции. Далее последовали многочисленные аресты. За короткий период число арестованных достигло около 800 человек, в числе которых были писатели, ученые, искусствоведы, педагоги, актеры, врачи, священники, общественные деятели, а также армянские депутаты турецкого меджлиса (парламента). Всех их погнали в Анатолию и зверски убили.

В результате Геноцида 1915 года было уничтожено около полутора миллионов армян, со своих земель было депортировано все армянское население Западной Армении.

24 апреля стал днем памяти невинных жертв и каждый год отмечается и в Армении, и в диаспоре.

В 1965 году на холме Цицернакаберд началось строительство мемориала памяти невинных жертв. Комплекс был закончен в 1967 году и стал священным местом армян.

44-метровая стела символизирует возрождение армянского народа. 12 плит, символизирующих собой 12 потерянных провинций, входящих в настоящее время в состав Турции, образуют конус, в центре которого на глубине полутора метров горит вечный огонь. Рядом со стелой находится стометровая стена с названиями городов и деревень, в которых происходила резня.

В 1995 году в другом конце парка был открыт Музей геноцида (архитекторы Калашян и Мкртчян), посвященный этим ужасным событиям. В музее представлены некоторые снимки, сделанные германскими фотографами (в том числе Армином Вегнером), а также их публикации. Недалеко от музея находится аллея, где иностранные государственные деятели сажают деревья в память о жертвах геноцида.

Каждый год 24 апреля, в День памяти жертв Геноцида армян, сотни тысяч людей поднимаются на холм к мемориальному комплексу и возлагают цветы (обычно гвоздики и тюльпаны) к вечному огню. Благодаря усилиям армянских диаспор по всему миру построено множество памятников жертвам Геноцида.



**Одной из причин Геноцида армян в Османской империи стала сюрреалистическая ревность турок. Статья Huffington Post.**

Влиятельное американское издание The Huffington Post обратилось к теме 100-й годовщины Геноцида армян в Османской империи 1915 г. В статье с красноречивым заголовком «100 лет одиночества. Геноцид армян и этнические чистки. 2015» представлены подробности преступления, имевшего место век назад, события, предшествовавшие этому факту, и последовавшее развитие.

«Минул почти век с трагического дня 24 апреля 1915 г., когда поздней ночью были арестованы представители армянской интеллигенции Османской империи и приговорены к смерти в концентрационных лагерях Алаша и Чанкара. Этому событию предшествовали продолжавшиеся порядка 20 лет этнические чистки и погромы армянского населения, включая убийство 300 тысяч армян по приказу султана Абдула Гамида в 1896 г. и погромы 30 тысяч армян в Адане 1909 г. », – пишет издание.

Автор статьи отмечает, что за последующее десятилетие на территории всего Армянского нагорья и других территориях Османской империи этническим чисткам подверглись 1,5 млн. армян, а также 1,5 млн. ассирийцев и греков. Подчеркивается, что это было «практически все христианское население империи».

«Христиан задерживали и запирали в церквях, заживо сжигали, бросали в пещеры, которые заливались ртутью, и просто сжигали в обычных газовых кабинках. Турки при содействии и по подстрекательству своего союзника в лице немецкого кайзера захватили имущество христиан, их банковские счета, насиловали и брали в рабство женщин и детей, тысячи были под угрозой смерти обращены в ислам. Большинство армянского населения было депортировано в концентрационные лагеря в Сирии, немногим удалось выжить при прохождении тысяч километров пути в пустыне», – говорится в статье.

Издание отмечает, что «в условиях продолжающейся уже век официальной политики отрицания Турции армяне остались в одиночестве и преисполнены горечью». Однако, пишет автор, исповедующие христианство армяне по всему миру сумели создать свои общины и процветали сперва в составе Советского Союза, а теперь и в независимой Армении.

«Одной из причин Геноцида армян стало смешанное на этнической и финансовой почве сюрреалистическое чувство ревности к этому народу. Например, армянская элита управляла производством хлеба и казенными средствами, направляемыми на разные отрасли промышленности империи. Кроме того, армяне были самой образованной прослойкой населения империи. Турки, потерявшие практически всю западную часть империи в войнах против независимости сербов и греков, воспользовались возможностью, которую им предоставила Первая мировая война, когда у Запада были иные проблемы, и предприняли широкомасштабный джихад против «неверных» и немусульманских меньшинств», – написало издание The Huffington Post.

## Американское издание The New Yorker опубликовало статью о Геноциде армян и политике отрицания Турции

Авторитетное американское издание The New Yorker в последнем номере опубликовало обширный материал на тему Геноцида армян в Османской империи 1915 г. и официальной политике Турции по данному вопросу.

В статье Раффи Хачадуряна под красноречивым заголовком «Век молчания: спасшаяся от Геноцида семья и пройденный ею долгий путь» на примере истории жизни деда автора, который родился в Диарбекире (Западная Армения, ныне территория Турции), рассказывается о Геноциде армян в Османской империи, насильственной исламизации армянского населения, тюркизации фамилий.

«Диарбекир стал израненным многонациональным городом, в котором численность христианского населения существенно снизилась», – отметил автор статьи.

Он подчеркивает, что уже целый век Турция отрицает факт Геноцида армян и даже наказывает тех, кто смеет озвучивать эту тему. Однако, по словам автора статьи, в настоящее время многие диарбекирские курды начали осознавать свою вину за участие в Геноциде и озвучивать эту тему.

Хачадурян говорит также о проблеме восстановления армянской церкви Сурб Киракос в Диарбекире и позиции городских властей.

«Хотя с момента осуществления Геноцида прошло столетие, многие подробности остаются неизвестными. Повсеместно применяемая государственная политика отрицания препятствует доступу к официальным архивам – как очевидным, так и скрытым образом», – говорится в статье.

***Источник: Panorama***

## НАРОДУ АРМЕНИИ

Никто не ожидал беды,
Ничто не предвещало бури,
Кто-то над землёй меч поднял,
Древний народ огню предал.

Снова наступила весна,
Нет кузнеца, нет пахаря,
О мой Господь,что за пора?
Нет молодоженов у алтаря.

Земля пропитана кровью,
Душам убиенных покоя нет,
Неужто предали забвению
Через много горьких лет?

Скучают наши поля,
Ласка пахаря нужна.
Ты их сеял, расчищал,
Из камня хлеб выжинал.

В огне правду искал
Справедливости ради.
Подвиги совершал,
К тебе тянулись люди.

Мир покоряли все мечом
От Китайской стены,
Ты это делал дудуком,
Эхо достигало Гизы.

Ты, народ, труд любящий,
Носишь крест свой тяжёлый.
И раны твои не заживут,
Пока палача не настиг Божий суд!

***Самвел МАНАСЯН,***
***Джавахк, с. Дилиска.***

**23Ջ** **«Եվրատեսիլ-2015» երգի մրցույթում**

Ռինոյի հետ՝ ձայնագրել է բազմաթիվ երգեր, «Japan records awards 2007» մրցանակաբաշխությունում ճանաչվել է «Տարվա հայտնություն»: Նույն տարում թողարկել է երկու ձայնասկավառակ: Նրա երգերը բազմիցս հնչել են անիմացիոն և գեղարվեստական ֆիլմերում: Այժմ ապրում է Տոկիոյում: Հայոց ցեղասպանության մասին շատ պատմություններ է լսել տատիկից՝ Գոհար Միքայելյան-Թոփալյանից, ում նախնիները գաղթել են Լիբանան, ապա՝ ԱՄՆ:

Ավստրալիան կներկայացնի Աթենա Մանուկյանը, հունահայ արմատներով այս երգչուհին վերջերս հաստատվել է Սիդնեյում, որտեղ թողարկել է իր վերջին տեսահոլովակը: 2008-ին մասնակցել է «Մանկական եվրատեսիլի» Հունաստանի նախընտրական փուլին, թեև հաղթող չի ճանաչվել: Այսօր 19-ամյա այս երգչուհու տեսահոլովակների «YouTube»-յան դիտումների քանակը միլիոնի է հասնում: Իր արմատների մասին էլ վերջին հարցազրույցներից մեկում ասել է. «Ցավոք, դեռ չեմ եղել Հայաստանում, սակայն հորս շնորհիվ ճանաչել ու սիրել եմ հայրենիքս: Նաև հայեցի դաստիարակություն եմ ստացել»: Իսկ վերջում առաջիկա անելիքների մասին խոսելիս շեշտել է.«Մտադիր եմ ընդունել Հայաստանից ստացած հրավերը»...

Դե, իսկ հայաստանյան մասնակցին, որը, ըստ Հանրային խորհրդանշական սցենարի, պետք է համախմբի անմոռուկի թերթիկների հետ զուգակցվող վերոնշյալ հինգ երգիչներին, կարծում ենք, ներկայացնելու կարիք չկա: Ինգա Արշակյանին բոլորս ենք ճանաչում և սիրում՝ նրա հզոր ձայնի և կատարողական տաղանդի համար...



**«Եվրատեսիլ». «Genealogy»-ի հրաշալի վեցնյակը**

*Առաջին անգամ Հայաստանը մասնակցել է «Եվրատեսիլին» 2006-ին Without Your Love երգով՝ Անդրեի կատարմամբ: Երգը դուրս եկավ եզրափակիչ, զբաղեցնելով 8-րդ տեղը, և դրանով իսկ ազդարարեց ՀՀ-ի հաջող մեկնարկը: 2012-ին մեր երկիրը չմասնակցեց Բաքվում կայացած մրցույթին:*

*Հայաստանը 2013-ին մրցույթում ներկայացրեց Dorians խումբը, որը զբաղեցրեց 18-րդ տեղը: «Lonely Planet» երգի հեղինակն էր Թոնի Այոմին Black Sabbath-ից:*

*2014-ի մասնակից Արամ MP3-ին զբաղեցրեց 4-րդ տեղը 174 միավորով:*

«Եվրատեսիլ» երգի մրցույթը անց է կացվում ամեն տարի, 1956 թվականից սկսած:

Մրցույթին մասնակցում են Եվրոպական հեռարձակողների միության մեկական ներկայացուցիչ այն երկրներից, որոնք մասնակցության հայտ են ներկայացնում: Փառատոնն անցնում է ուղիղ եթերով: Յուրաքանչյուր երկրից կարող է մասնակցել մեկ ներկայացուցիչ, երգը չպետք է գերազանցի 3 րոպեն: Ելույթից հետո հաղթող երգը որոշվում է հեռուստադիտողի ու ժյուրիի քվեարկության միջոցով:

«Եվրատեսիլ-2015» երգի միջազգային մրցույթը կանցկացվի Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայում մայիսի 19-23-ը: Մրցույթին մասնակցում է 40 երկիր:

## Կարեն ՄՂԴՍՅԱՆ

***

Դու հին ես՝ այո, բայց ոչ հնացած,
Դու քարի երկիր ու ոչ քարացած,
Մեր խելառ կամքն է լեռներիդ տեսքով այդպես քարացել,
Ալեհեր լեռդ՝ այդ մեր վշտից է միջուկից ճեղքվել:
Զրերդ կարկաչ՝ մեր արցունքներն են հատ-հատ գումարված,
Երկինքդ կապույտ՝ այդ մեր հավատի անհունն է անտակ,
Դաշտերդ կանաչ՝ մեր երազների հորիզոններն են,
Ձորերդ խորունկ՝ բարությամբ լցված հոգուդ ճեղքերն են,
Քո ծաղիկները՝ քո հերոսների քարավաններն են,
Երկաթ գրերդ՝ մեր օջախների անխախտ սյուներն են...
Դու հին ես՝ այո, բայց ոչ հնացած,
Դու քարի երկիր, բայց ոչ քարացած,
Մեր արևատես, մեր արևահամ,
Մեր հանճարածին երկիր Նաիրյան:

***

Պետք չեն խոսքերն այսօր, անիմաստ են ու զուր,
Քանզի սերս արդեն՝ հոգեվարք է ապրում,
Ապրած իմ օրերից՝ ես հոգնած ու տխուր,
Ես քո խոստումներից էլ չեմ գերվում:
Այսօրվանից սերս ես փոխում եմ կյանքի,
Դու՛ ինձ ներիր, ներիր հազար անգամ,
Ու՞մ է երազը պետք առանց անրջանքի,
Իմ անկյունն եմ ուզում վերադառնալ:
Ներիր, եթե ցավ եմ քեզ պատճառել,
Սերը միշտ լինում է «ինչու»ներով,
Ես մի վերջին անգամ ուզում եմ «Սեր» ասել,
Քեզ՝ մի վերջին անգամ, վերջին ներշնչումով:
Պետք չեն խոսքերն այսօր, արցունքներդ սրբիր,
Եվ թող լռությունը՝ լինի միակ վկան,
Ես քեզ համար՝ թերի ճակատագիր,
Մի կարճ երազ, խեղդված քո ապագան:

***

Ի՞նչ բախտ է սա,
Խարխափելով անվերջ քայլել այս մութի մեջ,
Չափչփելով ճանապարհը շարունակվող անվերջության:
Ի՞նչ ապագա,
Երբ ծախում ենք մեր ունեցած սրբությունը,
Այն էլ ձրի՝ և թվում ենք մենք մեզ բարձր ու անթերի:
Բայց հավատա՛,
Վհատվելու հնար՝ չկա: Այս օրերն էլ վերջ կունենան...
...Գիտե՞ս մեզ պես քանի մարդ է եկել-անցել
Առեղծվածի այս մութ ճամփան:

***

Քո մազերին իր արծաթն է դրել ծերությունը,
Ծովացել են ու ալիքվել հոգուդ կարոտները,
Ափսոսանքի ծանրությունն է իջել սրտիդ վրա,
Քո աչքերի զույգ կաթիլը՝ սառը ցողն է նրա:

Չեմ հասկացել ես քեզ հաճախ, երեխա եմ եղել,
Զարմանում եմ, տարակուսում՝ ո՞նց ես ինձ դիմացել,
Ես հաճախ խենթ, չարաճճի, դու միշտ ներողամիտ,
Հազար անգամ ներողություն, ներիր մեղավորիս:

Հիմա նստած՝ մեղանչումիս երգն եմ տխուր մանում,
Փաթիլվում են իմ հուշերը, երազներս ձգվում,
Հասկանում եմ թերևս ես միայն հիմա, հանկարծ,
Որ իմ Եսը մեծացել է Քո մեծ սրտին հենված:

Դպրոցի ազգությունը կախված չէ աշակերտների և վարժապետների լոկ հայությունից. լեզուն է, որ միայն կարող է այդ վերնագիրը դնել դպրոցի ճակատին... Թող ուրեմն հայ մանուկը նախ և առաջ որպես հայի զավակ ուսանի յուր սեփական լեզուն և ապա օտարինը: Ազգի հոգին և ազգի սիրտը կարող են յուրյանց հատկությունը և որակությունը մաքուր պահել միայն կերպարանագործվելով ազգային լեզվի ազդեցության տակ. այս ճշմարտությունը ուրացողը ուրացող է ազգության:

Հայ լեզուն է այն սարսափելի ուժը, որի ընդդեմ տկար են նաև միլիոնավոր բարբարոսների ավինները: Լեզուն է ազգությանց դրոշակը, լեզուն է նոցա որպիսության և վիճակի հայտարարը:

*Միքայել ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*


# «Горцарар»

**Издается с июля 1999г.**

**Автор проекта и учредитель – Ваграм БЕКЧЯН**

**Зам. гл. редактора - Роза ГУЛЯН**

Գլխ. խմբագրի տեղակալ՝ Ռոզա ԳՈՒԼՅԱՆ

ИЗДАТЕЛЬ
Издательский Дом
**«ШАГАНЭ»**
Лицензия серия ИД № 02313

Журнал зарегистрирован в Министерстве Российской Федерации по делам печати, телерадиовещания и средств массовых коммуникаций
Регистрационный номер ПИ № 77-5015

Авторские материалы не рецензируются и не возвращаются. Переписку с читателями редакция не ведет. Мнение авторов может не совпадать с мнением редакции.
Материалы со знаком Գ публикуются на правах рекламы.
Редакция не несет ответственности за содержание рекламных объявлений.

**ПЕРИОДИЧНОСТЬ ВЫХОДА - ЕЖЕМЕСЯЧНО**

**Отпечатано**
ОАО «Калужская типография стандартов» г. Калуга, ул. Московская 256.
**Формат А3, объём 4,0 п.л.**
**Тираж 1 500 экз. Зак. № 274.**

Территория распространения: Российская Федерация, страны СНГ, зарубежные страны.

В номере использованы материалы **«НОЕВ КОВЧЕГ», «АЗГ», «АРАВОТ», «ГА», «ЕТЕР», «һАЙКАКАН ЖАМАНАК», «ИРАВУНК», «ВОЗНИ», «НОВОЕ ВРЕМЯ».**

**Цена свободная.**



**Адрес издательства и редакции:**
**248001, г. Калуга, ул. Суворова, 160.**
**Тел.: (4842) 56-59-29, 59-17-73.**
**E-Mail: gortsarar@list.ru**
**факс (4842) 565-929,**
**www.gortsarar.ru**






E-Mail: gortsarar@list.ru